# ԹՈՒՐՔԵՐԷՆԻ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԵՐԷՆԻ ՎՐԱՅ

ԵՒ

# ԹՈՒՐՔԵՐԷՆԷ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐԸ

# ՊՈԼՍԻ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԵԶՈՒԻՆ ՄԷՋ

ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ

Վանի, Ղարաբաղի եւ Նոր-Նախիջեւանի բարբառներուն

———

# L'INFLUENCE DE LA LANGUE TURQUE SUR L'ARMÉNIEN

et

# LES MOTS EMPRUNTÉS AU TURC

## DANS L'ARMÉNIEN VULGAIRE DE CONSTANTINOPLE

Comparés

Avec ceux de Van, de Karabagh et de Nor-Nakhitchévan

---

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## Ա.

1. Թուրքերու յարաբերութիւնը հայոց հետ կ'սկսի ԺԱ. դարուն, երբ առաջին անգամ Տուղրիլ բէգի առաջնորդութեամբ Հայաստան կ'արշաւեն 1021 Թուականին՝ Վասպուրականի կողմէն և կը յառաջանան մինչև Նախջուան, ուրկէ ետ դառնալով կ'անցնին Պարսկաստան. Տուղրիլ տիրելով ամբողջ Պարսկաստանի, դաշն կը կապէ հագարացոց հետ և կը հիմնէ պարսկական Թուրք տէրութիւնը։

1042-ին դարձեալ կ'արշաւէ Տուղրիլ Հայաստան և կը յառաջանայ մինչև Նիգ գաւառը և յաղթուելով մեր Գագիկ Բ. Թագաւորէն, կը դառնայ Վասպուրական։

1047-ին երրորդ անգամ կ'արշաւէ Տուղրիլ, կուգայ Վան և քանիչորս գաւառներ աւերելով կը հասնի մինչև Վաղարշաւան։ Յաջորդ տարին չորրորդ ասպատակութեամբ կուգայ Բասեն ու Կարին և կը տիրէ մինչև արևմուտքէն Եկեղիք, հիւսիսէն Սպեր և Տայք, հարաւէն մինչև Տարօն, Հաշտեանք և Խորձեանք։ Տուղրիլ դեռ ուրիշ մի քանի արշաւանքներէ ետք մեռնելով ասպարէզը կը Թողու իր եղբայր և յաջորդ Ալփասլանին, որ կը յառաջանայ մինչև Կեսարիա։ Ասոր ալ որդին և յաջորդը Մելիքշահ (1086—1092) իր իշխանութեան տակ կ'առնէ բովանդակ Հայաստանը։

Մելիքշահի մահուանէն ետք կը կազմուին այլ և այլ

այլազգի ամիրայութիւններ, ինչպէս Շահի Արմէնի (Վանայ ծովին արևմտեան հիւսիսային կողմը), Դուինի, Անիի, Կարսի ամիրայութիւնները։

Այս ամիրայութիւնները ժամանակ մը տևելէ ետք՝ կուգան վրացիք, որոնք Հայաստանի հիւսիսային և արևելեան մասերը պարսիկներէն մաքրելով, կը տիրեն երկրին մինչև Մոնղոլ-Թաթարներու արշաւանքը։

Մոնղոլ-Թաթարներուն յարաբերութիւնը հայոց հետ կ'սկսի 1226 թուին։ Այս թուին Ճինկիզ խանի որդին Ճէլալէտտին փախչելով իր երկրէն, կուգայ Հայաստան և ամէն կողմ աւերելով կը հասնի մինչև Իկոնիոն։ Հոս Փոքր-Ասիոյ և ասորոց այլազգի և լատին իշխանները միանալով Կիլիկիոյ մեր Հեթում թագաւորին հետ, կը վռնտեն զինքը Արևելք։

Բայց Թաթարներու բուն արշաւանքը տեղի կ'ունենայ 1236 թուին, երբ Չարմաղան զօրավարը կ'արշաւէ Հայաստան և կ'առնէ Անին ու Կարսը. ապա յաջորդ Բաչու զօրավարը 1242-ին կ'առնէ Կարին, Ծոփք, Վասպուրական, Տուրուբերան. և այսպէս մինչև Միջագետք տիրելով ամբողջ Հայաստանը կը դնէ Թաթարական տիրապետութեան տակ։ Այս տիրապետութիւնն ալ կը տևէ մինչև 1340 թիւը։

1340 թուին Թաթարական տէրութիւնը կը կործանի և այլևայլ փոքրիկ տէրութիւններ կը ծնին անկէ։ Հայաստանի մէջ ալ կը ձևանան զանազան իշխանութիւններ. իշխող կը դառնան Պաղտատի խանը, արևմտեան կողմէն Թիւրքմէնները, արևելքէն պարսիկները և հարաւէն քուրդերը։ Այս վիճակն ալ կը տևէ մինչև 1387։

1387-ին էօզպէկ-Թաթարներուն առաջնորդը Լէնկ-Թիմուր կը մտնայ Հայաստան և ամբողջ երկրին տիրելով կ'անցնի Փոքր-Ասիա՝ օսմանցոց երկիրը և յաղթելով Տաճկաց Սուլթանին՝ կը դառնայ Թաթարիստան։ Հայաստան էօզպէկներուն ձեռքը կը մնայ մինչև 1405, այսինքն Լէնկ-Թիմուրի մահը։

Լէնկթիմուրի մահուանէն ետք Հայաստան դարձեալ կ՚անցնի քուրդ, թիւրքմէն և պարսիկ իշխաններու ձեռքը, մինչև որ Ուզուն-Հասան բարձրանալով պարսից գահին վրայ, կը տիրէ ամբողջ Հայաստանին՝ 1468 թուականին։ Ուզուն-Հասան իր իշխանութիւնը աւելի ընդարձակել ուզելով կը մտնէ Փոքր-Ասիա՝ օսմանցոց երկիրը։ Սուլթան Մէհէմմէտ Բ., որ Պոլիսին տիրելով բիւզանդեան կայսրութեան տէր էր դարձած, Ուզուն-Հասանի դէմ կուգայ և յաղթելով անոր՝ կը տիրէ արևմտեան Հայաստանին (1473)։

Այս բանը օսմանցիներու առաջին յարաբերութիւնն է հայոց հետ։ Անկէ ետք Սելիմ Ա. 1514-ին կը տիրէ Հայաստանի արևմտեան և հարաւային մասին՝ մինչև Ուրմիոյ ծովակը։ Սիւլէյման կ՚առնէ արևելեան Հայաստանը։ Մուրատ Գ. 1575-ին արշաւելով, պարսիկները կը յաղթուին և ամբողջ Հայաստանը, Վրաստանը, Ատրպատականը՝ Թաւրէժն ալ միասին, դաշնադրութեամբ կը յանձնեն Օսմանցոց (1585)։

Այնուհետև կռիւները կը շարունակուին և Հայաստան մէկ մը օսմանցոց ձեռքը կ՚անցնի և մէկ մը պարսից։ Բայց սովորաբար արևելեան մասը կը մնայ պարսից, իսկ արևմտեանը օսմանցոց։ Այսպէս կը հասնի մինչև 1746։

Այս ժամանակները կ՚սկսին ռուսական կռիւները՝ նախ պարսից և յետոյ օսմանցոց հետ. Ռուսերը 1828-ի դաշնադրութեամբ պարսից հետ և յետոյ 1829-ի և 1878-ի դաշնադրութեամբ օսմանցոց հետ՝ կը գրաւեն Հայաստանի այլ և այլ մասերը։

Այս ամբողջ արշաւանքներու և տիրապետութեանց շարքը ամփոփելով հետևեալ ցուցակին մէջ՝ կը տեսնենք թէ Հայաստանը իրենց գերիշխանութեան տակն են առած հետևեալ ցեղերը.

| | |
|---|---|
| Սելճուքեան թուրքեր | 1021—1092 |
| Այլազգի ամիրաներ | 1092—1124 |
| Վրացիք | 1124—1226 |
| Մողոլ-թաթարներ | 1226—1340 |

| | |
|---|---|
| *Թիւրքմէն, պարսիկ, քուրդ* | 1340—1387 |
| *Ճօղպէկ-Թաթարներ* | 1387—1405 |
| *Թիւրքմէն, պարսիկ, քուրդ* | 1405—1468 |
| *Պարսիկներ* | 1468— |
| *Օսմանցիք* | 1473— |

2. *Ցուցակէս կը տեսնուի որ հայ ժողովուրդը գրեթէ* 900 *տարի գերիշխանութեան տակն է ապրեր Թուրք-Թաթարական ցեղին այլ և այլ ճիւղերուն. այն է Սելճուքեան Թուրքեր, Պարսկաստանի Թուրքեր, մողոլ-Թաթարներ, ճօղպէկ-Թաթարներ, Թիւրքմէններ և վերջապէս օսմանցի Թուրքեր։ Այս ցեղերը թէև առանձին առանձին անուններ կը կրեն, բայց այնքան մեծ տարբերութիւն մը չունէին իրարմէ։ Օսմանցի Թուրքերը, որ ներկայապէս Հայաստանի մեծագոյն մասին տէրն են, հայոց վրայ տիրել և ազդել սկսած են* 1473-*էն. և այս ազդեցութիւնը կը շարունակուի չորս դարերէ ի վեր։ Թէև օսմանեան տիրապետութիւնը քանի քանի անգամ պարսկական նուաճումներով ընդմիջուած է և հետզհետէ կը փոքրանայ Ռուսական յառաջխաղացութեամբ, սակայն նա այնքան զօրեղ է եղած և հայերը այնքան շրջապատուած են Թուրքերով, որ ազդեցութիւնը միշտ տևական եղած է։*

*Այս երկարժամանակեայ ազդեցութեամբ է, որ բազմաթիւ Թուրքերէն բառեր, ոճեր և առածներ մտած են մեր խօսակցական լեզուին մէջ. եթէ ի նկատի առնենք մեր արդի ժողովրդական բարբառը՝ կը տեսնենք թէ ամենէն աւելի զօրեղ մասը կը ներկայացնէ թրքական տարրը, որ տեղ տեղ կը գերազանցէ մինչև անգամ հայերէնը։ Աշխարհաբարի այժմեան շարադասութիւնը՝ որ* բոլորովին հակառակն է գրաբարի շարադասութեան եւ ընդհակառակը բոլորովին նոյն է թուրքերէնի շարադասութեան հետ, *առ հասարակ մեր հայագէտներու կողմէ համարուած է իբր անկախ և ինքնուրոյն կերպով ձևացած բան մը. բայց դեռ քննելու գործ է թէ արդեօք մեր լեզուին*

այս աձուկի յեղաշրջումը նմանապէս Թրքական ազդեցութեան արդիւնքը չէ։

Դիտելի կէտ մըն ալ այն է, որ Թրքական ազդեցութեան տիպը կը կրեն ոչ միայն բուն Հայաստանի և օսմանեան կայսրութեան մէջ գտնուած հայերու բարբառները, այլ և սահմանէն դուրս գտնուած հեռու գաղթականութիւնները. այսպէս Նոր-Նախիջևանի, Խրիմի, Ռումանիոյ, Պուլկարիոյ, Աւստրիական գաղթականութեանց, Հունգարիոյ, Կովկասի, Լեհաստանի հայոց, Մարսիլիայի, Փարիզի, Եգիպտոսի, Լոնտոնի և մինչև Ամերիկայի հայոց բարբառները։ Ասոր պատճառը նախ այն է որ այդ տեղերէն ոմանք նախապէս հպատակ էին արդէն օսմանեան պետութեան կամ ուրիշ Թուրք-Թաթարական ցեղերու, հետևաբար և կրած են տիրող տարրին ազդեցութիւնը. այսպէս են Խրիմի, Ղարաբաղի, Ռումանիոյ, Պուլկարիոյ ևլն. հայերը։ Երկրորդ՝ ոմանք գաղթած են կամ Հայաստանէն և կամ օսմանեան տիրապետութեան տակ գըտնուած որ և իցէ երկրէ մը. այսպէս՝ Նոր-Նախիջևանի և Գրիգորուպոլսի հայերը՝ որոնք գաղթած են Խրիմէն. նոյնպէս Եգիպտոսի, Ֆրանսայի, Ամերիկայի ևլն. հայերը՝ որոնք դեռ վերջերս գաղթեցին Պոլսէն, Խարբերդէն և Տաճկաստանի ու տաճկական Հայաստանի ուրիշ կողմերէն։

3. Ի հարկէ այս բոլորին վրայ նոյն կերպով և նոյն ուժով չէ ազդած օսմանեան տիրապետութիւնը, այլ կեդրոնական տեղերը աւելի զօրեղ, իսկ կեդրոնէն հեռացած տեղերը և բուն Հայաստանի մէջ համեմատաբար աւելի տկար։ Ամէնէն աւելի ազդուած են Փոքր-Ասիոյ միջավայրը և Պալքանեան Թերակղզիին արևելեան ծայրը, որոնց մէջ օսմանեան տէրութեան գործած բնական և պաշտօնական ազդեցութիւնը՝ միանալով բռնակալական ճնշման հետ*, անհետ է ըրած բոլորովին հայ բարբառը. այսպէս Փոքր-

* Կը հաստատեն թէ այս տեղերու կառավարիչները մահուամբ պատժել սպառնացած են հայերէն խօսող անձերը։

Ասիոյ մէջ երբ գիծ մը քաշենք Պրուսայէն սկսելով և իջնելով դէպի հարաւային արևելք՝ առնենք Պալըքէսէր, Քէօթահիա, Քոնիա, Ադանա, ասկէ դէպի հիւսիս բարձրանալով Կեսարիա, Եօզկաթ, Գասթէմունի և այս տեղէն ալ դէպի արևմուտք մինչև Պրուսա դառնանք, այս եռանկիւնին մէջ գտնուած հայերուն բերանը չպիտի գտնենք հայերէն բարբառը, բացի քանի մը գիւղերու մէջ մնացած հետքերէն։ Թրքախօս են մանաւանդ Էնկիւրիի կաթոլիկ հայերը, Աքշէհիր, Պոլու ևլն.՝ որոնք նոյնպէս այս եռանկիւնին մէջ կը բովանդակուին արդէն։ Ռումէլիի մէջ ալ թրքախօս են Պոլսոյ անմիջապէս մօտէն սկսած քաղաքները, Չաթալճա, Չորլու, Ադրիանուպոլիս, Ֆիլիպպէ կամ Փիլիպպուպոլիս և Պուլկարիոյ հայոց ամենամեծ մասը, բացի վերջին գաղթականներէն։

4. Այս վերին աստիճանի զօրեղ ազդեցութեան, աւելի ճիշտ բռնակալութեան ենթակայ չէ եղած մեր յիշած տեղերը միացնող մասը. այսպէս՝ Ռոտոսթօ կամ Թէքիրտաղ, Կոստանդնուպոլիս՝ եւրոպական մասին մէջ և ասոնց դիմացը՝ ասիական մասին մէջ՝ Նիկոմիդիա կամ Իզնիմիտ, Ադափազար, Կէյվէ, որոնք ամբողջը միասին՝ փոքրիկ, բայց խիստ հայաշատ շրջանակ մը կը կազմեն։ Նմանապէս փոքրիկ հայախօս շրջանակ մը կը կազմեն Զմիւռնիա և Մանիսա՝ շրջակայ գիւղերով միասին։

Ադանա-Կեսարիա-Եօզկաթ-Քասթէմունի գծին աջ կողմը ամբողջ հայախօս է. այսպէս՝ Սամսոնի, Տրապիզոնի, Կիւմիւշխանէի, Շապին-Գարահիսարի, Ամասիայի, Եւդոկիայի, Սեբաստիայի, Տիվրիկի, Կիւրինի, Արաբկիրի, Ակնի, Մալաթիայի, Զէյթունի և Մարաշի հայերը Փոքր-Ասիոյ մէջ՝ այլ և այլ բարբառներ կը խօսին, իրարմէ քիչ կամ շատ տարբերութեամբ։ Ասկէ ալ աւելի արևելք, արդէն բուն Հայաստանն է ամբողջովին հայախօս։ Միայն երբ Ադանայէն գիծ մը քաշելով և անցնելով Այնթապի և Ուռհայի վրայէն՝ հասնինք մինչև Մուսուլ և Սիւլէյմանիէ, այս գծին ամբողջ հարաւային մասը արաբախօս կամ

քրդախօս է. այսպէս են Հալէպ, Դամասկոս կամ Շամ, Սղերդ եւն. եւն.։

5. Օսմանեան լեզուին գործած ազդեցութեան աստիճանին համեմատ՝ հայերը կրնանք բաժնել երեք խումբի. առաջին՝ բոլորովին թրքախօս հայերը, ինչպէս Պրուսա եւն.։ Երկրորդ՝ այն հայերը՝ որոնք թէև թրքախօս չեն, բայց բաւական առատ պաշար մը ունին թրքերէնէ փոխառած բառերու. այսպէս են Պոլիս, Զմիւռնիա, Սամսոն եւն.։ Երրորդ՝ այն հայերը՝ որոնց մէջ թրքերէնէ փոխառեալ բառերու թիւը շատ աւելի նուազ է։ Այս բաժանումները թէև օսմանեան տիրապետութեան տակ գտնուած հայոց համար ըրինք, բայց նոյն է նաև անկէ դուրս գտնուած հայոց համար։ Այսպէս Ռուսաստանի մէջ՝ Աքքիրմանի հայերը՝ որ բոլորովին թրքախօս են, կը պատկանին առաջին խումբին։ Նոր-Նախիջևանի, Խրիմի, ինչպէս նաև Ղարաբաղի հայերը երկրորդ խմբին։ Ախալցխայի, Ալէքսանդրապոլի, Կարսի, Երևանի եւն. հայերը, ինչպէս և Ռումանիոյ և Աւստրիոյ հայախօս մնացած հայերը կը պատկանին աւելի երրորդ խումբին։

Այս տողերով թէև աշխարհագրական սահմանագծութիւն մը և օսմանեան լեզուի ազդեցութեան աստիճանները ցոյց տուինք, բայց միևնոյն ժամանակ նաև այլևայլ բարբառներու իրարու հետ ունեցած համեմատութիւնն ըրած եղանք։ Հիմայ կ'անցնինք քննելու օսմանցոց ազդեցութիւնը մեր շրջակայ ազգերուն վրայ և անոնց կրած ազդեցութիւնը համեմատելու մեր կրած ազդեցութեան հետ։

6. Օսմանցոց ազդեցութիւնը մեր շրջակայ ազգերուն վրայ՝ շատ աւելի փոքր եղած չէ։ Առնենք օրինակի համար յոյները՝ որոնք մեր կենակիցները կը համարուին և մեզի հետ բաղդատուած են շատ անգամ։ Յոյներն ալ Փոքր-Ասիոյ միջին մասին մէջ իրենց մայրենի լեզուն մոռցած և թրքախօս են դարձած. այսպէս թրքախօս են օրինակ՝ Կեսարիոյ, Քոնիայի, Քարամանի և ուրիշ տեղերու

յոյները։ Պոլսոյ և շրջականներու յոյները Թրքականէն փոխ են առած բազմաթիւ բառեր. և եթէ այս փոխառութեանց թիւը տեղացի հայերու փոխառութեանց թիւէն աւելի նուազ է, ասոր պատճառն ուրիշ բան չէ, բայց եթէ այն որ այս տեղերու յոյները կրնան տեղացի համարուիլ, իրենց հայրենիքին մէջ են դրեթէ։ Ինչպէս պէտք է որ օրինակ պոլսեցի կամ զմիւռնիացի յոյները բուն Հայաստանի հայոց հետ համեմատուին և ոչ թէ պոլսեցի կամ զմիւռնիացի հայոց հետ. մինչդեռ այսպէս չ՚ըլլուիր։ Ընդհակառակը սովորութիւն է եղած պոլսեցի յոյնը պոլսեցի հայուն հետ համեմատութեան դնել և յետոյ պոլսեցի յոյնին առաւելութիւնը նկատելով պոլսեցի հայուն վրայ (մեր խօսքը միայն լեզուի մասին է), հետեւցնել թէ առհասարակ յոյն ազգը աւելի զօրեղ և ընդդիմադիր հանդիսասած է օսմանցոց ազդեցութեան դէմ քան հայ ազգը. մինչդեռ վերև ըսուածին պէս եթէ պոլսեցի յոյնը իբր իր հայրենիքին մէջ բնակող ազգ. համեմատութեան դըրուէր միայն հայաստանցի հայու հետ, այս կեղծ եզրակացութիւնը պիտի ջնջուէր և պիտի տեսնուէր թէ երկու ազգերն ալ նոյն աստիճանով ազդուած են օսմանցիներէն։

7. Մեր միւս դրացիներէն պուլղարները, ռումէնները, ալպանացիները, լազերը, վրացիները և մինչև իսկ ապատակեաց քրդերը շատ ազդուած են նոյնպէս օսմանցիներէն։ Պուլղարներէն մաս մը մահմետական դառնալով՝ կազմած են Թրքախօս փօմաք կոչուած ցեղը՝ որ շատ թշնամի է քրիստոնեայ մնացած բուն պուլղարներուն։ Այժմ ալ թէև Պուլղարիան ազատ երկիր է, բայց դարձեալ շատ քաղաքներու և գիւղերու մէջ պուլղարները Թրքախօս են։—Ալպանացիներու կէսը, մօտ երկու միլիոն ժողովուրդէն մէկ միլիոնը, նմանապէս մահմետական է դարձած և զատուելով հարաւային օրթոդոքս կամ կաթոլիկ ալպանացիներէն, կը կոչուին կէկա, մինչդեռ հարաւայինը կը կոչուի Թօսքա։ Ալպաներէնը լցուած է բազմաթիւ փոխառութիւններով։—Լազերուն կէսէն աւելին

զուտ Թրքախօս է. Թող թէ մեծագոյն մասը մահմետական է դարձած կրօնքով։—Վրացիներէն նոյնպէս շատեր մահմետական են դարձած և թէև վրացերէնը չեն մոռցած, բայց Կովկասէն գաղթելով հաստատուած են Փոքր-Ասիոյ այլ և այլ մասերը։—Ռումէնները նմանապէս ունին շատ փոխառութիւններ օսմաներէն լեզուէն։—Քրդերը ամբողջովին մահմետական են. իսկ իրենց լեզուն լի է թրքական փոխառութիւններով։

Թուրքերը և Թաթարները ազդած են նաև ռուսերուն վրայ, որոնց լեզուն խումբ մը Թրքական փոխառութիւններ ունի։ Franz Miklosich լեզուաբանը՝ որ հաւաքած և ուսումնասիրած է Թուրք լեզուէն փոխ առնուած բառերը արևելեան և հարաւային-արևելեան Եւրոպայի լեզուներուն մէջ, 2500 փոխառութիւններ կը յիշէ. տես նոյն հեղինակին Die türkischen Elemente in den Südost- und Osteuropäischen Sprachen աշխատութիւնը, հրատարակուած Wien, 1889—90։ Մեր յաջորդ աշխատութիւնը թէև կը պարունակէ 4200 փոխառեալ բառ, բայց այս՝ Պոլսոյ բարբառին փոխառութիւններուն թիւն է. բուն Հայաստանի բարբառներուն փոխառութեանց թիւը ասոր կէսը միայն կրնայ ըլլալ։

8. Այն ժամանակ՝ երբ մեր (տաճկահայոցս) աշխարհիկ գրական լեզուն դեռ նոր պիտի ձևակերպուէր, մեր գրողները կը գրէին բուն ռամկական խօսուն բարբառը՝ բոլորովին լի տաճկերէն բառերով, ձևերով, ասացուածներով և տաճկական շարադասութեամբ։ Օրինակ մը տալը կարծեմ աւելորդ չէր լինէր.

«Թագաւորը կէլլայ քէօշքէն կամ արզ օտասիէն, կուգայ կը նստի Թախտին վրայ բարևելով, չաւուշներնալ մաղթանք կարդալով՝ որ կըսվի Ալգըշ։ Աջ դին՝ կըկենայ գըլար աղասին, ձախ դին՝ գափու աղասին, որ է գլուխ ճերմակ ներքինիներուն, անոր ետևէն կըկենան խաս օտալըներըը։ Ան ատենը կըսկսի նէօպէդ զարնըվիլ, որ կէս ժամ կը քշէ. լըմընալու ատենը Տուաճի չավուշը Թախտին քովը մօտիկնալով մաղթանք կըկարդայ, մուէզզիններըը ամէնը մէ-

կէն Ամէն կը կարդան։ Թագաւորը կելլայ երթալու. ան ատենն է՝ որ արիֆէին թօփէրը կը նետուին։

Երբոր արդ օտասին կըմտնայ, հոն կուգայ ողորմութիւն տըվօղը ու տասնըչորս սէլաղին ճամինէրուն քեաթիպնէրը, կէս կլոր կըկենան էհրամին վրայ։ Թագաւորին ձախ դին կըկենան իրեք գըլխաւորը ճերմակ ներքինինէրուն, դէպ 'ի դուռը կըկենան սէրային ամէն միւէզզինները։ Ամէննալ բան կարդալէն ետև՝ խաղինէ քեախեասիէն բան կառնեն, որ որչափ քիչ ըլլայ՝ մեծ կըսեպվի թագաւորին դիպցէն ըլլալով։» (Եղանակ Բիւզանդեան. Հ. Ղուկաս վ. Ինճիճեան. Վենետիկ. 1816. էջ 220—221)։

Բայց Թրքական զօրեղ ազդեցութենէն՝ ինչպէս որ բնական օրէնքը կը պահանջէր, ծնաւ զօրեղ ալ հակազդեցութիւն մը. Թրքական բառերով ու ոճով գրուածները ծաղրելի ու զզուելի դարձան հայ ականջներուն. բայց որովհետև այն ժամանակ ուրիշ լեզու չկար, բայց եթէ նոյն այդ ռամկօրէնը և հին գրաբարը, ուստի յառաջ եկաւ գրաբարեանութիւնը. ով որ հայերէն գրել ուզէր, պիտի աշխատէր գրաբարի նման գրել: Այն ժամանակ անշուշտ եղան մտածողներ և նկատողներ թէ այդ լեզուն ալ հասկանալի չէր ժողովրդին, այն է հայոց ամենամեծ մասին. բայց Թրքական ոճին յառաջ բերած զզուանքը բաւական էր այդ մտածումները մոռցնել տալու և նկատող աչքերն ալ կուրացնելու համար։ Այս զօրեղ հակազդեցութեան ծնունդ է նմանապէս օտար բառերը հայերէնով թարգմանելու ձգտումը. և որովհետև զօրեղ զգացմունքը միշտ չափազանցութեան կը մղէ մարդը, այս բնական օրէնքով բառակերտութեան գործն ալ չափազանցութեան հասաւ։ Ամէն մի բառ՝ որ օտար էր, անխտիր թարգմանուիլ ըսկըսաւ. հոգ չէր եթէ մինչև իսկ նոր թարգմանութիւնը աւելի անհասկանալի և տգեղ դառնար։

Այս շրջանին մէջ ուրեմն գործակը զգացմունքն է միայն։ Բայց եկաւ ժամանակը որ զգացմունքի տեղ նաև մտածմունքը գործեց. այն ժամանակ սկսաւ աշխարհաբարեանութիւնը. սա թէև ի սկզբան այնքան մօտ չէր ժողովրդական լեզուին, այլ գրաբարի ձևերով շատ խառն էր,

սակայն հետզհետէ կը զտուի, կը մաքրուի այս վերջիններէն եւ անշուշտ օր մըն ալ բոլորովին արժանի պիտի լինի այս անուան։

Սակայն ժողովրդական լեզուին փոխ առած Թրքական բառերու ահագին խումբը մէյ մը նախկին ռամկական գրականութեան մէջ գործածուելէն ետքը, այլ եւս չկրցաւ մտնել գրական լեզուին մէջ եւ միշտ վտարուած պիտի մնայ, որքան ալ որ պարզուի եւ որքան ալ որ ժողովրդական դառնայ մեր գրական աշխարհաբարը։ Այսպէս ըրին նաեւ մեր դրացի յոյները։

Սակայն ռումէնները՝ որոնք հին գրական մնացորդներ չունէին մեզի պէս, այսպէս չըրին. ասոնք չկրցան իրենց գրական լեզուն բաւական մաքրել այս Թրքական եկամուտ բառերէն, այնպէս որ իրենց գրական բարբառը այժմ լի է Թրքական փոխառութիւններով։ Այս տեսակէտով հայերը աւելի բարձր դասելու է քան ռումէնները։

Հայ գրական լեզուն թէեւ այսպէս դիւրութեամբ եւ վճռական կերպով մաքրուեցաւ Թրքական փոխառութիւններէն, բայց նոյն բանը անկարելի պիտի ըլլայ ընել նաեւ ժողովրդական լեզուին վերաբերութեամբ, որքան ալ որ աշխատին գրագէտները։ Ասոր միակ միջոցը կրթութեան ընդհանուր ծաւալումն է. ուրիշ խօսքով այն ժամանակ միայն կը յաջողի այս, երբոր հայկական կրթութիւնը ըստիպողական լինի ամէն տեղ։ Ինչպէս որ ասոր մէկ պարզ արդիւնքը տեսնուեցաւ վերջերս նոյն իսկ բոլորովին Թըրքախօս հայերու մէջ։ Այսպէս Պրուսայի, Կեսարիոյ, Եոզղատի մէջ եւ ուրիշ տեղեր, մասամբ Պոլիս գաղթելու, բայց մեծ մասամբ ալ այդ գաւառներուն մէջ բացուած հայ վարժարաններու շնորհիւ հայերէն, եւ այն ալ գրական հայերէն խօսող երիտասարդներու թիւը բաւական շատցած էր։

—

## Բ.

1. Հայերէնի մէջ Թուրքերէնէ փոխառեալ բառերու վրայ ոչ մի աշխատութիւն չէ եղած դեռ ոչ հայերէն և ոչ ալ եւրոպական լեզուով։ Franz Miklosich-ի վերը յիշուած աշխատութիւնը կը պարունակէ նոր յունարէն, պուլկարերէն, սերպերէն, ռումաներէն, լեհերէն, մեծ ու փոքր ռուսերէն, հունգարերէն ևլն. լեզուներու մէջ գտնուած փոխառութիւնները. բայց հայերէնի փոխառութեանց մասին խօսք ալ չկայ։ Ճշմարիտ է թէ Պոլսոյ, Վենետկի կամ Վիեննայի մէջ այլ և այլ ժամանակներ հրատարակուած են ռամկօրէնէ հայերէն մեծ և փոքր բառգրքեր, որոնց մէջ հաւաքուած են ժողովրդական լեզուին մէջ գործածական խումբ մը Թրքական բառեր և անոնց դիմացը նշանակուած հայերէն թարգմանութիւնը, բայց այս աշխատութիւնները ոչ մի գիտական արժէք չունին։ Նախ այն պատճառով որ Թրքական փոխառութիւններուն հաւաքումը ասոնց գոնէ մեծ մասին մէջ ամբողջական չէ։ Երկրորդ՝ եթէ ամբողջական ալ ըլլայ, բառերը չունին այն ճշտութիւնը՝ որ կը պահանջուի այսպիսի գիտնական աշխատութեանց մէջ. այսինքն մասամբ նշանակուած են այս և մասամբ այն գաւառաբարբառին մէջ գործածական ձևերը, մեծ մասամբ ալ գրական Թուրքերէնի յատուկ ձևերը, առանց նշանակութիւն տալու հայոց մէջ առած ձևերուն։ Երրորդ՝ ասոնց նպատակը ռամկական լեզուն բարեփոխել և հայոց հայերէն սորվեցնել ըլլալով՝ բացի հայերէն համանիշը դնելէ ուրիշ բանի հոգ տարած չեն. նշանակած չեն նոյն իսկ թէ նոյն բառը ինչ ձև ունի բուն Թրքերէնի մէջ ևլն։

2. Այս թերին լրացնելու համար պատրաստեցինք մերովանն ներկայ աշխատութիւնը։ Մեր այլևայլ բարբառներուն մէջ Թրքական փոխառութիւնները տարբեր տարբեր ձևեր առած ըլլալով, ամէնէն առաջ պէտք էր ընտրել որոշ գաւառաբարբառ մը և հետևել անոր մէջ գործածական ձևերուն։ Մենք յարմարագոյնը համարեցինք

Կոստանդնուպոլսոյ հայոց բարբառը. այսպէս համարելու ալ մի քանի պատճառներ ունէինք։ Նախ որ Թրքական փոխառութեանց կողմէ ամէնէն աւելի հարուստ հայ բարբառը այս բարբառն էր և ուրիշ բարբառներու մէջ գործածական բոլոր Թրքական փոխառութիւնները կը պարունակէր. որով Պոլսոյ բարբառն ընտրելով մեր հաւաքածոն աւելի ամբողջական պիտի ըլլար. մինչդեռ եթէ ուրիշ բարբառ մը ընտրէինք, Պոլսոյ բարբառէն աւելի աղքատ ըլլալով՝ փոխառեալ բառերէն մաս մը՝ թէև Պոլսոյ հայոց մէջ գործածական, բայց չպիտի կրնար ներկայանալ մեր հաւաքած բառերուն շարքին մէջ։

Երկրորդ՝ Պոլիս ըլլալով օսմանեան տէրութեան մայրաքաղաքը, ինչպէս որ Պոլսոյ օսմանցոց խօսած լեզուն օսմանցոց դրական և պաշտօնական լեզուն է, նոյնպէս ալ հայոց գործածած գոնէ Թրքական փոխառութիւնները կրնային պաշտօնական համարուիլ և տեսակ մը առաջնակարգ դիրք ստանալ։

Երրորդ՝ պոլսահայոց գործածած ձևերը ուրիշ բարբառներու մէջ գործածուած ձևերէն աւելի մօտիկ ըլլալով Թրքական լեզուին ձևերուն, բառարանը գործածողներուն համար աւելի դիւրին պիտի ըլլար պոլսական ձեւերն ընտրելը։

Չորրորդ՝ Պոլիս ըլլալով աշխարհիս ամէնէն աւելի հայաշատ քաղաքը, այս բազմամարդութիւնը նմանապէս տեսակ մը առաւելութիւն կուտար իրեն։

Հինգերորդ՝ Զմիւռնիոյ, Մանիսայի, Թէքիրտաղի, Նոր-Նախիջևանի, Խրիմի, Գրիգորուպոլսի ևն. ևն. հայոց Թրքական փոխառութիւններն ալ շատ նման ըլլալով Պոլսոյ ձևերուն, այս ընտրութիւնը յարմարագոյնը կրնար դառնալ։

Մեր աշխատութեան մէջ հաւաքեցինք ուրեմն բոլոր այն բառերը՝ որ Պոլսոյ հայերէն ժողովրդական բարբառը փոխ է առած Թրքական լեզուէն, այս անուան տակ իմանալով ոչ թէ զուտ Թուրքերէնը, այլ օսմանցոց լեզուն, որ

կազմուած է զուտ Թուրքերէնի, պարսկերէնի և արաբերէնի խառնուրդով։ Այս լեզուն թէև աւելի յարմար ձայնով օսմաներէն կը կոչուի սովորաբար, բայց գոնէ գրքին վերնագրին մէջ աւելի պատշաճ գտնուեցաւ «Թուրքերէն» դնել։

Օսմաներէնէ փոխառեալ բառերուն կցուած են նաև իտալերէն, նոր յունարէն, ֆրանսերէն, ինչպէս և Պոլսոյ հրէարէն (սպանական բարբառ մը), ռուսերէն, հունգարերէն և անգլիերէն լեզուներէն փոխառեալ բառերը, որոնց գոնէ ամենամեծ մասը Թուրքերէնի միջոցով հասած է մեզի։

Աշխատութիւնը աւելի կատարեալ ընելու համար պոլսահայոց փոխ առած բառերուն հետ համեմատութեան են դրուած նաև Վանի, Ղարաբաղի և Նոր-Նախիջևանի մէջ գործածուած ձևերը, եթէ կան. որով աշխատութեանս մէջ ներկայացուած կ'ըլլայ ընդհանուր հայ ազգաբնակութեան գլխաւոր չորս ծայրերուն կրած ազդեցութիւնը օսմաներէնէ։

Աշխատուած է որ Թուրքերէնէ փոխառեալ պոլսահայ բառերու հաւաքումը որքան կարելի է ամբողջական ըլլայ. ասոր համար մեզ մեծ ծառայութիւն են մատուցած Վենետիկի աշխարհաբարէ-գրաբար բառարանին երկու տպագրութիւնները, ինչպէս և Մ. Աբիկեանի օսմաներէն ընդարձակ բառարանը (տպ. Պոլիս, 1888), որ առանձին նպատակ է ունեցած զուտ Թուրքերէն բառերու ճոխ հաւաքում մը տալու։

Վերը ըսինք թէ Պոլսոյ բարբառը ուրիշ բարբառներու մէջ գործածուած բոլոր Թրքական փոխառութիւնները կը պարունակէր. պատահեցան սակայն բառեր, որոնք թէև յիշեալ բարբառներէն մէկուն կամ միւսին մէջ գործածական էին, սակայն Պոլսոյ բարբառին մէջ գոյութիւն չունէին. մենք այս բառերն ալ դրինք իրենց այբուբենական կարգին, նշանակելով թէ Պոլսոյ մէջ գործածական չէ, այլ միայն այս կամ այն բարբառին մէջ։ Տարակոյս չկայ թէ յիշեալ երեք բարբառներուն կամ ուրիշ բարբառնե-

րու մէջ ալ դեռ կը գտնուին ուրիշ փոխառեալ բառեր, որոնք Պոլսոյ բարբառին մէջ համապատասխան ձեւեր չունենալով, նշանակուած չեն այստեղ։ Ասոնց հաւաքումն ալ կրնայ առանձին յաւելուած մը կազմել։

Համառօտութեան համար աշխատութեանս մէջ դիմուած է հետեւեալ ձեւերուն.

1. Պ., Վ., Ղ., Ն, համառօտագրութիւնները կը նշանակեն Պոլիս, Վան, Ղարաբաղ, Նոր-Նախիջեւան։

2. Ամէն բառ՝ որով նոր տող մը կ'սկսի, Պոլսոյ մէջ գործածական է. հակառակ պարագային որոշ կերպով նշանակուած է թէ «այս բառը Պոլսոյ մէջ գործածական չէ»։

3. Եթէ բառը նոյն ձեւով գործածական է նաեւ յիշեալ երեք բարբառներէն մէկուն կամ միւսին մէջ, նշանակուած է քովը համառօտագրութեամբ։

4. Իսկ եթէ միւս բարբառներուն մէջ տարբեր ձև է առած կամ նշանակութիւնն է փոխած, նոյն տողին մէջ առանձինն նշանակուած է։

5. Երբ միւս բարբառները համապատասխան տարբեր ձեւեր ունին և առաջին կամ տող սկսող բառը (այսինքն Պոլսոյ բարբառին յատուկ ձեւը) միմիայն Պոլսոյ մէջ գործածական է, քովը գրուած է Պ. և ստորակէտով զատուած է միւս բարբառներուն այդ համապատասխան ձեւերէն։

6. Վերջապէս երբ բառը բացի Պոլսէն ուրիշ բարբառի մէջ չկայ ամենեւին ոչ նոյն և ոչ ալ համապատասխան ձեւով մը, կը կազմէ առանձին տող, առանց Պ. համառօտագրութեան։

Յատկապէս Պոլսոյ ձեւերուն սկիզբը գրուած են նշաններ՝ որոնք անոնց գործածութեան աստիճանը կը նշանակեն, հետեւեալ կերպով.

† կը նշանակէ թէ բառը յատուկ է միայն հին սերունդին, այժմ քիչ գործածական է և հետզհետէ կը կորսուի։

* կը նշանակէ թէ նոյն բառը ունի նաեւ զուտ հայե-

րէն համապատասխան ձև, այնպէս որ խօսողը ազատ է խօսակցութեան մէջ այդ բառը գործածելու կամ ոչ։

* կը նշանակէ թէ բառը քիչ գործածական է և նոր է սկսած ներմուծուիլ լեզուին մէջ։

Ոչ մի նշան չունեցող ձևերը ամէնէն աւելի շատ գործածական ձևերն են. ասոնց մէջ գտնէ գոյականները հայերէն համապատասխան ձևեր չունին. միայն ածականները, բայերը ևն. կրնան մօտաւորապէս ուրիշ բառով կամ ուրիշ դարձուածներով թարգմանուիլ հայերէն։

Ամէն բառի դիմաց՝ հայերէն նշանակութեան քով գրուած է նաև նոյն նշանակութիւնը ֆրանսերէն թարգմանութեամբ, աշխատութիւնը յատկապէս եւրոպացի ուսումնականներուն աւելի մատչելի ընելու համար։

Տառադարձութեան մէջ Վանի և Ղարաբաղի ձևերը արևելեան տառադարձութեամբ են. Նոր-Նախիջևանի ձևերը Պատկանեանի տառադարձութեամբ և ճիշտ ու ճիշտ համապատասխան պօլսականին. իսկ այս վերջինը ուղղակի արևմտեան տառադարձութեամբ։ Մէկ դէպքի մէջ միայն արևելեան տառադարձութիւնը ի նկատի չէ առնուած համառօտութեան համար. այն է վերի 3° պարագային, այսինքն երբ Վանի կամ Ղարաբաղի ձևը ճիշտ ու ճիշտ Պօլսոյ ձևն ունի և ասկէ միայն բ, գ, դ, ձ, ջ տառերով է տարբեր պ, կ, տ, ծ, ճ տառերուն տեղ։

Գալով օսմաներէն բառերուն և ասոնց տառադարձութեան, բառերը նշանակուած են օսմանեան տէրութեան պաշտօնական-գրական լեզուին մէջ ընդունուած ուղղագրութեամբ. իսկ ասոնց քով աւելցուած է նոյն գրական լեզուով արտասանութիւնը՝ եւրոպական լեզուաբանական վերջին տառադարձութեամբ, առանց նկատի առնելու թաթարական կամ թուրք գաւառաբարբառներու, պարսկական և արաբական արտասանութիւնները։ Իսկ այս եւրոպական տառադարձութեան քով ալ նշանակուած է բառին նշանակութիւնը թուրքերէնի մէջ, եթէ

հայոց մէջ առած նշանակութենէն տարբեր է. եթէ ոչ նշանակութիւնը գրուած չէ։

## Գ.

1. Ամէն լեզուի մէջ ալ, հին լինի այդ լեզուն թէ նոր, փոխառեալ բառերը երկու ճամբով միայն կրնան առաջ գալ. առաջին՝ գրքերու միջոցով և ուսումնական մարդոց ձեռքով եղած փոխառութիւններ, որոնք գրքերու մէջ միայն կ'ապրին և հազիւ թէ կրնան բուն ժողովրդական լեզուին մէջ մտնել. ասոնք կը կոչուին գրական-ուսումնական փոխառութիւններ։ Երկրորդ՝ բուն ժողովրդական փոխառութիւններ, որոնք իրարու հետ միասին ապրող երկու ժողովուրդներու մէջ կրնան առաջ գալ բերնէ բերան խօսակցութեամբ. ասոնք ալ կը կոչուին ժողովրդական փոխառութիւններ։

Թուրքերէնը, որուն մատենագրութիւնը այնքան խեղճ է և այնքան ալ ուշ կ'սկսի, ոչ մի գրական փոխառութիւն ըրած է մեզի. մեր փոխառութիւնները բոլորն ալ կը պատկանին ժողովրդական փոխառութեան տեսակին և ըստ այսմ առաջ եկած են բուն ժողովրդական Թուրքերէնէն։ Ասոր իբր ապացոյց կը ծառայեն հետևեալ պարագաները.

ա. Գրական Թուրքերէնը՝ իբր խառնուրդ Թաթարական, պարսկական և արաբական լեզուներուն, լի է այնպիսի պարսկերէն և արաբերէն բառերով ու ձևերով որ ժողովրդական լեզուն ամենևին չի ճանչնար. արդ՝ նոյն բառերը գոյութիւն չունին նաև մեր փոխառութեանց շարքին մէջ։ Մեր փոխառութեանց ամբողջութիւնը բաղկացած է միմիայն այն բառերէն, որոնք առհասարակ գործածական են խօսակցական-ժողովրդական Թուրքերէնի մէջ։

բ. Գրական Թուրքերէնը ունի շատ ձևեր՝ որոնք բառական այլայլութիւն են կրած ժողովրդական լեզուին մէջ.





այսպէս՝ գրական Թուրքերէն xotoz, ǰamešuy, čaryek, heyyet, müstehakk, nerdüban, vesvese, višne ևլն. ևլն. ձևերը ժողովրդական լեզուին մէջ դարձած եղած են fotoz, čamašər, čeyrek, hiyet, mustahak, verdiven, fesfese, fišne ևլն. ևլն.։ Արդ՝ մեր փոխառութիւններն ալ այս երկրորդ ձևերէն են և ո՛չ թէ առաջիններէն. Հմմտ. Պոլսոյ բարբառով՝ ֆօթօզ, չամաշըր, չէյրէկ, հիյէթ, մուստահախ, վէրտիվէն, ֆէսֆէսէ, ֆիշնէ ևլն. ևլն.։

Ասոնցմէ կը հետևի թէ Թուրքերէնէ փոխառեալ բառ մը անպատճառ ժողովրդական Թուրքերէն ձևին հետ համեմատելու է, և ոչ երբեք գրական Թուրքերէն ձևին հետ. ճիշդ ինչպէս որ ֆրանսերէն, իտալերէն, սպաներէն կամ ռումաներէն բառ մը ստորին լատիներէնէ յառաջացած լինելով ստորին լատիներէնի հետ կը համեմատուի և ոչ բնաւ գրական լատիներէնի հետ։ Հակառակ պարագային, այսինքն երբ գրական Թուրքերէն բառի մը հետ համեմատուի փոխառութիւնը, երևան պիտի գան լեզուաբանական այնպիսի օրէնքներ՝ որոնք իսպառ գոյութիւն չեն ունեցած հայկական շրթունքներու վրայ։ Այսպէս՝ վերի համեմատութիւններէն պիտի հետևցուէր թէ խ=ֆ, Ն=վ, վ=ֆ, իւ=ու ևլն. ևլն., մինչդեռ այս փոփոխութիւնները Թուրքերուն յատուկ են և ոչ երբեք հայոց *)։

Թէև մեր աշխատութեան մէջ պոլսեցոց բարբառին հետ միշտ համեմատութեան առնուած են նաև Նոր-Նախիջևանի, Վանի և Ղարաբաղի բարբառներուն Թուրքական փոխառութիւնները, բայց դժբախտաբար նոյնը կարելի չի պիտի ըլլայ ընել նաև յաջորդ քննութեանս մէջ, որովհետև ծանօթ չեն ինձ այն ժողովրդական Թրքական բարբառները՝ որոնց ծնունդ են Նոր-Նախիջևանի, Վանի և Ղարաբաղի փոխառութիւնները։ Քննութիւնս ուրեմն պիտի պարունակէ միայն պոլսահայ բարբառին Թրքական փոխառութեանց ձայնական փոփոխութիւնները։

---

*) Այս խնդրին պիտի վերադառնանք ներածութեանս վերջը։

2. *Օսմանեան գրական լեզուին այբուբենը կը պարունակէ 32 տառ. բայց այս այբուբենը շինուած ըլլալով յատկապէս արաբերէն և պարսկերէն լեզուներուն համար, ամենևին չի կրնար ներկայացնել օսմաներէնի ամբողջ ձայնական հարստութիւնը. այսպէս՝ մինչդեռ օսմանեան լեզուն ամբողջովին ձայնաւորներու* ծանրութեան *և* թեթեւութեան *վրայ հիմնուած լեզու մըն է, այս այբուբենը բացի* ا*-էն ուրիշ որոշ ձայնաւոր տառ մը չունի. ընդհակառակը այբուբենը կը կրէ* ث, س, ص—ذ, ز, ظ, ض—ت, ط *կրկնակ բաղաձայնները, որոնք բոլորովին աւելորդ ծանրութիւն են օսմաներէնի համար։ Ուստի մէկ կողմ թողելով օսմանեան այբուբենը, ներկայ քննութեան համար կը գործածենք լեզուաբանական այբուբենը՝ եւրոպական այբուբենի շարքով։*

*Օսմաներէնի (գրական թէ ժողովրդական լեզու) ձայնական դրութիւնը կը պարունակէ* 30 *ձայն, հետևեալ կերպով.*

*Ա. Ձայնաւորներ՝ թիւով* 8.

1. *Ծանր ձայնաւորներ*—a, ə, o, u.
2. *Թեթև ձայնաւորներ*—e, i, ŏ, ü.

*Բ. Բաղաձայններ՝ թիւով* 22.

b, č, d, f, g, ġ, h, ǰ, k, l, m, n, p, r, s, š, t, v, x, y, z, ž.

*Գ. Երկբարբառներ չկան օսմաներէն լեզուին մէջ։*

3. *Այս ձայներուն վրայ կ'անցնինք խօսիլ մի առ մի.*

# Ա. ՁԱՅՆԱՒՈՐՆԵՐ

## 1. *Ծանր ձայնաւորներ*

a.

1. *Այս ձայնը օսմաներէնի մէջ գրաւորապէս կը ներկայանայ պարզ իւսթիւնով կամ իւսթիւնաւոր* ا, آ, ع, عا, ﻪ *ուղղագրութիւններով, որոնք հաւասարապէս կը հընչուին* a=ա, *հայկական փոխառութեանց մէջ ալ պահելով ընդհանրապէս նոյն* ա *հնչումը. քիչ անգամ միայն* ﻪ *գըրականին մէջ կը հնչուի* է։ *Օրինակ* *)

—قبا kaba=խապա «*թանձր, կոշտ, բիրտ*»; قباق kabak =խապախ «*դդում*»; تقليد taklid=թախլիտ «*կեղծ*»; تقلاق taklak=takla=թախլա «*գլուխկոնծի*»; تخت taxt=taxd= թախտ «*գահ, գահոյք*»; خراب xarab=խարապ «*աւեր*»։

ا— اقران akran=ախրան «*ընկեր, հասակակից*»; دلال dellal=tellal=թէլլալ «*մունետիկ*»; قما kama=խամա «*դաշոյն*»; قمارباز kumarbaz=խումարպազ «*խաղամոլ*»։

آ— آطه ada=ատա «*կղզի*»; آرشون aršun=aršən=արշըն «*կանգուն, գազ (չափ մը)*»; آخور axor=axər=ախըռ «*ա~*

---

*) Յաջորդ օրինակները հետեւեալ կարգով են. 1. Գրական ձեւին ուղղագրութիւնը և հնչումը. 2. Ասոր ժողովրդական հնչումը. 3. Հայոց մէջ ստացած ձեւը. 4. Նշանակութիւնը։ Եթէ ժողովրդական ձեւը նոյն է գրականին հետ, թիւ 2-ը դանց կ՚ըլլուի։

*խոռ»*; آتاق atak=atik=աթիք *«խիզախ, ժիր, համարձակ»*; آفرين=aferin=aferim=աֆէրիմ *«կեցցէ՛ս, ապրի՛ս»*։

ع—عقرب akreb=ակրէպ *«կարիճ»*; عكسى aksi=ախսի *«հակառակ, հակառակասէր»*; معرفت marifet=մարիֆէթ *«հը-նարք, հնարիմացութիւն, ճարտարամտութիւն»*; تعجيز taǰiz=թաճիզ ըճիղ *«ձանձրացնել, գլուխ ցաւցնել»*; لعنت lanet=nallet=նալլէթ *«անիծեալ»*; طمعكار tamakyar=tamalıkyar=թամահքյար *«ագահ, կծծի»*։

عا—عارسز arsəz=առսըզ *«անամօթ, անհանդարտ, ա-նառակ»*; عادتا adeta=ադէթա *«սովորաբար, պարզապէս, հասարակ»*; عادت adet=ադէթ *«սովորութիւն»*; عالم alem=ալէմ *«աշխարհ, ամէն մարդ»*; عاشق ašək=աշըխ *«աշուղ»*։

ه—قوجه koǰa=խօճա *«մեծ, ահագին»*; مشته müšte=mušta=մուշտա *«բռունցք»*; قوپچه kopča=կօփճա *«կոճակ»*; مشربه mišrebe=mašrapa, moršupa=մօրշուփա *«ըմպանակ, ջուրի թիթեղեայ մեծ բաժակ»*։

2. *Օսմաներէնի* a *ձայնը բացի այս ընդհանուր և սովորական փոփոխութիւններէն՝ կը կրէ նաև հետևեալ մասնական փոփոխութիւնները՝ հայկական փոխառութեանց մէջ.*

ը—*այսպէս են* قدر kadar=խըտար *«չափ». օր.* աս խըտար *«այսչափ».* անխըտար *«այնչափ».* ինչխըտար *«որ-չափ».* աղխըտար *«այդչափ».* horu խըտար *«հօրս չափ» ևլն.*; حصير hasər=խըսիր *«փսիաթ»*; ژاندارمه žandarma=ǰandarma=ճանտըրմա *«ոստիկան»*։

է—*Օսմ.* ay *ձայնը կը դառնայ* է՝ بر خيلى bir xayli=խէլ մը *«բազմաթիւ, խումբ մը» և* خير xayr=խէր *«բարի գործք» ձևերուն մէջ*։

ə.

1. *Այս ձայնը օսմաներէն գրչութեան մէջ կը համա-պատասխանէ պարզ էսրէի և կամ էսրէով* ا, اى, ى, ع, عى, اع *ձևերուն, որոնք հաւասարապէս* ը *կը հնչուին գը-*

*րական թէ ժողովրդական օսմաներէնի, ինչպէս և հայկա-կան փոխառութիւններուն մէջ։ Երբեմն միայն գրականին մէջ կ'ունենան* ի *հնչումը։ Օրինակ՝*

—قرلانغج kərlanġəǰ=խըռլանճղըճ *«ծիծեռնակ»*; جلق ǰəlk=ճըլխ *«հոտած (հաւկիթ)»*; قناب kənab=kənnab=խըննապ *«առասան, կանեփեայ լար»*; خيانت xəyanet=խը-յանէթ *«չար»*; صدق sədk=սըթխ *«ջերմեռանդութիւն»*; سنجاب sənǰab=սընճապ *«սկիւռ»*; سپارش siparəš=səparəš=սըփարըշ *«յանձնարարութիւն»*։

ا—اخلامور əxlamur=ըխլամուր *«թմբի»*; اسپاناك əspanak=əsbannak=ըսպանախ *«ծմել, շոմին»*; اسقره əskara=ըսխառա *«կասկարայ»*; اصرغان əsərġan=ըսըրղան *«եղիճ»*։

ای—ایلیق ələk=ըլըխ *«գաղջ»*; ایشل ایشل əšəl əšəl=ըշըլ ըշըլ *«փայլ ի փայլ, վառ ի վառ»*; ایشیق əšək=ըշըխ *«լոյս, ճրագ, մոմ»*։

ی—چقین čəkən=չըխըն *«ծրար»*; دیرلتی dərəltə=տը-ռըլթը *«մնոտիք, դատարկ բան»*; صیق sək=սըխ *«խիտ, հոծ»*; تیغ tiġ=təġ=թըղ *«հերիւն»*; خرچین xərčən=xərčəl=խըռչըլ *«անընտել, ամաչկոտ, մարդէ քաշուող»*։

ع—عرض ərz=ըռզ *«պատիւ, ամօթի զգացում». ու-րիշ օրինակ չկայ։*

عی, اع—*Գրական լեզուին մէջ կան թէև օրինակներ, բայց ատոնք չեն մտած ժողովրդական բարբառին մէջ, ուստի և գոյութիւն չունին նաև մեր փոխառութեանց մէջ. ինչ.* اعراض əraz *«երես դարձնել» արաբերէնէ։*

2. *Ժողովրդական բարբառին* ə *ձայնը շատ անգամ մեր փոխառութեանց մէջ կը դառնայ նաև՝*

ի—*այս ձևափոխութիւնը տեղի կ'ունենայ* 1. *բոլոր յատկացեալներու ծայրը. օր.* آغاج قاوونی aġaǰ kavunə=աղաճ խավունի *«կիտրոն (բառացի՝ ծառի սեխ)»*; تره اوتی tere otə=թէրօղօթի *«ագառքեղի նման խոտ մը»*; قولاق توزی kulak tozə=խուլախթօզի *«քունք»*; قوزی قولاغی kuzu kulaġə=խուզուխուլաղի *«թրթնջուկ, գառնադմակիկ»*; صایاغی sayaġə=սայաղի *«ճարպ» ևն.*։

2. جى *ճը վերջացող և արհեստաւոր ցուցնող անուններուն մէջ. օր.* آشجى ašǰə=աշճի *«խոհարար»;* پاچاوره‌جى pačavraǰə=փաչավրաճի *«հին լաթի կտորներ հաւաքող»;* قوندره‌جى kunduraǰə=խունտուրաճի *«կօշկակար»;* باشجى bašǰə=պաշճի *«ոչխարի գլուխ ծախող»;* آرپه‌جى arpaǰə=արփաճի *«գարի ծախող» ևն. ևն. առանց բացառութեան։*

3. *Ծանր բայերու անցեալ ընդունելութեան* مش մըշ *վերջաւորութիւնը նմանապէս առանց բացառութեան կը վերածուի* միշ. *օր.* قزدرمق kəzdərmak *«բարկացնել»*=խըզտըրմիշ ընել *«բարկացնել»;* آزمق azmak *«կատղիլ»*=ազմիշ ըլլալ *«կատղիլ»;* اولمش olməš=օլմիշ *«հասուն, հասած» ևն. ևն.։*

*Այս երեք պարագաներուն մէջ ալ թրք.* ə, ǰə, məš *ծանր մասնիկները չփոխուած են համապատասխան և հոմանիշ թեթև* i, ǰi, miš *մասնիկներուն հետ։*

4. *Ուրիշ խումբ մը բառերու ծայրը կամ վերջավանկին մէջ գտնուած* ə *ձայները վերածուած են նմանապէս* ի։ *Օրինակ՝* آلچى alčə=ալչի *«գաճ»;* آجى aǰə=աճի *«լեղի, դառն. 2. վրէժ»;* آيى ayə=այի *«արջ»;* قالب kaləb=խալիպ *«կաղապար»;* قامش kaməš=խամիշ *«եղէգ»;* قاييصى kayəsə=խայիսի *«ծիրան»;* حصير hasər=խըսիր *«փսիաթ»;* چاير čayər=չայիր *«արօտ, մարգագետին»;* ترشى turšə=թուրշի *«թթու (գոյ.)»;* قاص قتى kas katə=խասխաթի *«չնթուկիլ նստիլ»;* قارن آغريسى karən aǵrəsə=խառնաղրսի *«ձայնդ կտրի, ձայնդ մարի»։*

է—*այսպէս են՝* لايق layək=լայէխ *«արժանաւոր, արժանի»;* قايق kayək=խայէխ *«նաւակ, նաւ»;* تنبيه tenbih=թէմպէհ *«պատուէր»;* تخته‌بيتى taxta biti=թախտապէթի *«մըլուկ, փայտոջիլ»։*

ու—چاقى čakə=չախու *«ղմելի, կտրոց»;* اويلم oyləm=օյլում *«խոռոչ»։*

Օ.

1. *Ժողովրդական լեզուին* o *ձայնը կը համապատասխանէ գրական լեզուին պարզ էօթրէին և կամ էօթրէով* و, او, ا, وا, ع, *գրչութիւններուն, որոնք նմանապէս կը հնչուին* o։ *Այս* o *ձայնը անփոփոխ կը մնայ նաև մեր փոխառութեանց մէջ։ Օրինակ՝*

’—طقسان doksan=տօխսան *«իննսուն»*; صمون somun=սօմին *«բոլորաձև մեծ հաց»*; صكره sonra=սօղրա *«յետոյ»*; نخود noxud=nohud=նօհուտ *«սիսեռ»*; نقطه nokta=նօխտա *«կէտ»*։

و—طوپطولو dop dolu=տօփտօլու *«բոլորովին լի»*; بوغاز boğaz=պօղազ *«կոկորդ»*; روسپی rospi=orosbu=օռօսպու *«բոզ»*; دوست dost=տօստ *«բարեկամ»*; بوستان bostan=պօստան *«բանջարանոց»*; صوفی sofu= սօֆու *«մոլեռանդ»*; خرطوم xor-tum=խօռթում *«պատիճ»*։

او—اووه ova=օվա *«դաշտ»*; اويمق oymak=օյմաք ընել *«փորել, փորագրել»*; اويا oya=օյա *«ժանեակ»*: اوطه oda=օտա *«սենեակ»*; اورتاق ortak=օրթախ *«ընկեր»*; اورته orta =օրթա *«մէջտեղ»*։

ا—اردو ordu=օռտու *«բանակ»*։

وا—خوانچه xonče=խօնչա *«սեղան (մրգերով եւն. զարդարուած)»*; خواجه xoǰa=հօճա *«տաճիկ վարժապետ, կարդացող»*։

ع—عثمانلو osmanlu=օսմանցի *«տաճիկ»*։

Ու.

1. *Ժողովրդական Թուրքերէնի* ու *ձայնը կը համապատասխանէ գրական Թուրքերէնի պարզ էօթրէին և կամ էօթրէով* او, ا, ع, عو, و *գրչութիւններուն՝ որոնք նմանապէս թէ գրական և թէ ժողովրդական Թուրքերէնի, ինչպէս և հայ փոխառութեանց մէջ կը հնչուին* ու։ *Գրականին մէջ երբեմն կը հնչուին նաև* իւ։ *Օրինակ՝*

’— غرابیه ġurabiyye=xurabiye=խուրապիյէ «խմորեղէն մը»; رخصت ruxsat=ուրուխսաթ «արտօնութիւն, թոյլտուութիւն, հրաման»; طلوم tulum=թուլում «տիկ»; بتپرست butperest=putperes=փութփէրէզ «կռապաշտ, անհաւատ»; بلوط bulut=պուլուտ «ամպ»։

او— اوشاق uşak=ուշախ «սպասաւոր, մանչ, ծառայ»; اویدرمه uydurma=ույտուրմա «կեղծ, սուտ, յարմարեալ, շինծու»; اویغون uyġun=ույղուն «յարմար»; اوچورم učurum=ուչուրում «գահավէժ»; اویوز uyuz=ույուզ «բորոտ, քոսոտ» ևլն.։

ا— اصول usul=ուսուլ «միջոց, եղանակ, կերպ»; استره üstüre=ustura=ուստուռա «ածելի»; اغور uğur=ուղուր «բարի ոտք, յաջողութիւն»; امید ümid=umud=ումուտ «յոյս»։

ع— հայկական փոխառութեանց մէջ պատահած չէ. բայց գրական Թուրքերէնն ունի. ինչ. عموم umum «ընդհանուր, հասարակաց, ամբողջ»; عبودیت ubudiyyet «ծառայութիւն» ևլն.։

عو— հմմտ. գրակ. Թրք. ملعون=melun «անիծեալ»։

و— موشموله mušmula=մուշմուլա «զկեռ»; قوروم kurum=խուռում «ճանճախարիթ, մուր»; پول pul=փուլ «նամակադրոշմ»; طوفان tufan=թուֆան «ջրհեղեղ»; مخصوص maxsus=մախսուս «դիտմամբ»։

2. Հայկական փոխառութեանց մէջ Թրք. ս կը դառնայ նաև ի կամ ը. այսպէս են՝ صویولی su yolə=սըյօլի «ջրմուղ»; صمون somun=սօմին «մեծ և կլոր հաց»; زیتون zeytun=զէթին «ձիթապտուղ»; ایون oyun=օյին «խաղ»; ایونجق oyunǰak=օյինճախ «խաղալիք»; غوجوق goǰuk=կօճիկ «տեսակ մը հաստ վերարկու»; قورشون kuršun=խուրշին «կապար»։

## 2. Թեթեւ ձայնաւորներ

e.

1. *Ժողովրդական Թուրքերէնի* e *ձայնը կը համապատասխանէ գրականին պարզ իւսթինին կամ իւսթինով* ا, ه, هٔ *ձեւերուն, որոնք նմանապէս կը հնչուին* է՝ *թէ գրական եւ թէ ժողովրդական Թուրքերէնի արտասանութեամբ, ինչպէս նաեւ մեր փոխառութեանց մէջ։ Օրինակ՝*

—كپنك kepeneg=քէփէնէկ *«Թիթեռնիկ»*; تكرلك teker-lek=թէքէրլախ *«անիւ»*; رنك reng=ըռէնկ *«գոյն»*; درد derd=տէրտ *«ցաւ, վիշտ»*; تذكره tezkire=teskere=թէսկէրէ *«անցագիր» եւն. եւն.։*

ا—اركك erkek=էրքէկ *«արու»*; انكنار enginar=էնկինար *«կանկար»*; اذيت eziyet=eziyet=էզիյէթ *«նեղութիւն, տանջանք»*; اطراف etraf=էթրաֆ *«բոլորտիք, շուրջ»*; ازبر ezber=էզպէր *«գոց սորվիլ»*; ابريشم ebrišüm=ebišüm=էպիւշիւմ *«ապրշում» եւն.։*

ه—كرسته kereste=քէրէստէ *«տախտակ»*; تپه tepe=թէփէ *«դագաթ, բլուր»*; ميشه miše=meše=մէշէ *«կաղնի» եւն.։*

هٔ—نشئه neše=նէշէ *«ախորժակ, տրամադրութիւն»*; نشئهلنمك nešelenmek=նէշէլէնմիշ ըլլալ *«ախորժ տրամադրութիւն ունենալ»։*

2. *Ասոնցմէ դուրս ժողովրդական Թուրքերէնի* e *ձայնը մեր փոխառութեանց մէջ դարձած է նաեւ՝*

ա—اكشيمك ekšimek=աճխիլ *«թթուիլ (կերակուրի համար)»*; منديل mendil=մանտիլ *«թաշկինակ»։*

ու, օ—جواب ǰevab=ճօղապ, ճուղապ *«պատասխան»։*

3. *Ժողովրդական Թուրքերէն* ey *քանի մը տեղ կը դառնայ* է. *ինչ.* شيخ šeyx=շէխ *«տաճկի կրօնաւոր»*; كيف keyf=քէֆ *«քմահաճոյք, զուարճութիւն»*; زيتون zeytun=զէթին *«ձիթապտուղ»։*

### i.

1. *Ժողովրդական Թուրքերէնի* i *հնչումը կը համապատասխանէ գրականին պարզ եսրէին կամ եսրէով* ا, ای ، ی ، ع ، عی ، اع *ձևերուն. ասոնք ալ թէ գրական և թէ ժողովրդական լեզուին, ինչպէս և մեր փոխառութեանց մէջ ունին* ի *ձայնը։ Օրինակ՝*

ا—کتابجی kitabǰə = քիթապճի «*գրավաճառ*»; جلا ǰila = ճիլա «*փայլ*»; چلنکیر čilingir = չիլինկիր «*դարբին*»; بللور billor = պիլլօռ «*բիւրեղ*»։

ا—افترا iftira = իֆթիրա «*զրպարտութիւն*»; اکرام ikram = իքրամ «*հրամցնել*»; انجیر inǰir = ինճիր «*թուզ*»; اشکنبه iškenbe = iškembe = իշկէմպէ «*քաղիրթ*»; اشته ište = իշտէ «*ահաւասիկ*»; اسکمله iskemle = իսկէմրի «*աթոռ*»։

ای—ایلیك ilik = իլիկ «*ոսկորի ծուծ*»; ایجاد iǰad = իճատ «*հնարել, գիւտ*»; این in = ին «*որջ*»; ایشجی išǰi = իշճի «*բանուոր*»; ایلیشك ilišik = իլիշիկ «*առկախ խնդիր, թերի մնացած, կիսկատար թողուած բան*»։

ی—سجیم siǰim = սիճիմ «*առասան, լար*»; کیرج kireǰ = քիրէճ «*կիր*»; کیله kile = քիլէ «*գրիւ*»; میل mil = միլ «*սլաք*»; میشین mišin = mešin = մէշին «*ոչխարի մորթ, կաշի*»։

ع—علاج ilaǰ = իլաճ «*դեղ*»; عناد inad = ինատ «*յամառութիւն*»; عبرت ibret = իպրէթ «*օրինակ*»; عبارت ibaret = իպարէթ «*բաղկացեալ*»; علّت illet = իլլէթ, ճիլլէթ «*գէշ հիւանդութիւն, ախտ*»։

عی—*Այս ձևով են օրինակ* عید iyd «*տօն, տօն օր*», عیسی Isa «*Յիսուս*» *ևլն., բայց այս բառերը մնած են ոչ ժողովրդական լեզուին մէջ և ոչ ալ հետևաբար մեր մէջ։*

اع—اعلام ilam = իլամ «*դատարանի վճռագիր*»; اعلان ilan = իլան «*ազդ*»; اعتبار itibar = իթիպար «*յարգ, արժանիք*»։

### ö.

1. *Ժողովրդական լեզուին* ö *հնչումը գրականին մէջ*

կը ներկայանայ պարզ էօթրիւով կամ էօթրիւով او, و, ع ձեւերով. ատոնք ալ առհասարակ կը հնչուին էօ՝ թէ գրական, թէ ժողովրդական լեզուին և թէ մեր փոխառութեանց մէջ։ Օրինակ՝

’—سكود söyüd = սէօյիւտ «ուռի»; كمور kömür = քէօմիւր «ածուխ»; كورك gövrek = կէօվրէկ «պաքսիմատ»; كمرك gömrük = կէօմրիւք «մաքս»։

او—اوكچه ökče = ökǰe = էօքճէ «կրունկ»; اورس örs = էօրս «դարբնոցի սալ»; اولوم ölüm = էօլիւմ «մահ»; اوكسز öksüz = էօքսիւզ «որբ»։

و—دوشمه döšeme = տէօշէմէ «տախտակամած»; كوبك göbek = կէօպէք «պորտ»; كوپری köprü = քէօփրիւ «կամուրջ»; بوجك böǰek = պէօճէկ «միջատ»։

ع—عمر ömr = էօմր «կեանք»; عذر özr = özür = էօզիւր «արդարացում, չքմեղանք»։

ü.

1. Ժողովրդական լեզուին ü ձայնը կը համապատասխանէ գրականին պարզ էօթրէին կամ էօթրէով او, و, ع, ا գրչութիւններուն՝ որոնք նոյնպէս իւ հնչումն ունին գրական և ժողովրդական լեզուին, ինչպէս և մեր փոխառութեանց մէջ։ Օրինակ՝

’—شبهه šübhe = šüpe = շիւփհէ «կասկած, տարակոյս»; منجم müneǰǰim = միւնէճճիմ «աստղաբաշխ»; مژده müžde = միւժտէ «աւետիս»; كلاه külah = քիւլախ «գլխանոց»; كلخان külxan = külhan = քիւլան «հնոց» ևլն.։

او—اوزوم üzüm = իւզիւմ «խաղող»; اوستون üstün = իւսթիւն «գեր ի վերոյ»; اوتو ütü = իւթիւ «հարթուկ»; اوشنمك üšenmek = իւշէնմիշ ըլլալ «դանդաղիլ, ծուլանալ» ևլն.։

و—دودوك düdük = տիւտիւկ «սուլիչ»; كوتوك kütük = քիւթիւկ «կոճղ»; سوپورگه süpürge = սիւփիւրկէ «աւել»; چوروك čürük = չիւրիւկ «փտած» ևլն.։

ع—عفونت ufunet = üfünet = իւֆիւնէթ «բորբոքում»;

ուրիշ օրինակ չկայ. Թէև գրական լեզուն ունի عنوان ünvan «անուն, հռչակ», عليا ülya «բարձրագոյն» ևլն. ձևեր, բայց ասոնք չեն մտած ժողովրդական լեզուին, հետևաբար նաև հայոց փոխառութեանց մէջ։

1—استوپو üstüpü = իւսsիւփիւ «խծուծ»; استوبج üstübeǰ = իւսsիւպէճ «սպիտակադեղ» ևլն.։

## Բ. ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐ

### b.

1. Ժողովրդական b ձայնին դէմ գրականը ունի միշտ ب ձևը, որ կը հնչուի նոյնպէս b. այս հնչումը անփոփոխ կը մնայ նաև մեր փոխառութեանց մէջ։ Օրինակ՝ بزاز bezzaz = bezaz = պէզազ «կտաւավաճառ»; بسبللی bésbelli = պէ՛սպէլլի «բոլորովին յայտնի»; بهار bahar = պահար «համեմ»; بهار behar = bahar = պահար «գարուն»; تباشير tebašir = tebešir = sէպէշիր «կաւիճ»; چبوق čəbuk = čubuk = չուպուխ «գաւազան, ցուպ»; حب häbb = hab = հապ «դեղահատ»; خراب xarab = խարապ «աւեր»; صبر sabr = սապր, սապըր «համբերութիւն»; عجائب aǰaib = աճայիպ «զարմանալի՛ բան»; قباق kabak = խապախ «դդում»; هندبا hindiba = հինsիպա «եղերդ»; يبانجی yabanǰə = յապանճը «օտար» ևլն. ևլն.։

2. Սոյն b ձայնը հայկական փոխառութեամբ փ-ի է վերածուած بتون bütün = փիւթիւն «ամբողջ» և ասկէ بسبتون büsbütün = փիւսփիւթիւն «բոլորովին» բառերուն մէջ։

### č.

1. Ժղ. Թրք. č ձայնին դէմ կը գտնենք գրական Թրք. چ č և հայ. չ։ Օրինակ՝ چفته čifte = չիֆsէ «զոյգ»;

چكركه čekirge = չէքիրկէ «մարախ»; چكمجه čekmeǰe = չէք-մէճէ «դարակ, գզրոց»; چولاق čolak = չօլախ «ձախլիկ»; چويد čivid = չիվիտ «լեղակ»; كچه keče = քէչէ «թաղիք»; پاچاوره pačavra = փաչավրա «հին ցնցոտի»; قوچ koč = խօչ «խոյ»; كوچ göč = կէօչ «չու»; صاچى sačə = սաչի «հարսի օժիտ»; قيچ kəč = խըչ «կող»; قوچان kočan = կօչան «կաղամբի ևլն. կուրծ»; قولچاق kolčak = խօլչախ «թեւնոց»; قاچاق kačak = խաչախ «մաքսանենգ, փախստական» ևլն.։

2. Այս č ձայնը հայկական փոխառութեանց մէջ բաղաձայնէ անմիջապէս առաջ գտնուած ժամանակ կը վերածուի ջ-ի. իսկ եթէ նոյն č-էն առաջ նաև ն ձայնը կայ, կը ջնջուի. այսպէս են ايچ طونى ič donə = իջտօնի «վարտիք»; ايچرت ičret = իջրէթ «խմիչք, օղի ևլն.»; اوچقور učkur = ուջխուր «վարտիքի կապ, խոնջան»; رنجبر renǰber = renčber = ըռէջպէր «բանւոր, մշակ»։ Այս օրէնքը կը գտնենք նաև բուն հայկական բառերու մէջ. ինչ. ճաջնալ = ճանչնալ. աջկ = աչք. մէջկ = մէջք ևլն.։

3. Նոյն č ձայնը ճ-ի կը վերածուի քանի մը տեղ՝ խ ձայնէն ետք. հմմտ. اقچه akče = ախճէ «ստակ»; بوغچه boğča = bohča = պօխճա «ծրար»; باغچه bağče = bahǰe = պախճա, պախճէ «պարտէզ» ևլն.։

d.

1. Ժողովրդական Թուրքերէնի d հնչումը կը ծագի գրականին د d, ض d, ت t, ط d ձայներէն. Հայկական փոխառութեանց մէջ ժողովրդական d անփոփոխ կը մնայ։ Օրինակ՝

د—دها daha = տահա «դեռ, տակաւին»; دیبك dibek = տիպէկ «սանդի տոռն»; دينج dinǰ = տինճ «առոյգ, պնդակազմ»; سكود söyüd = սէօյիւտ «ուռի»; كدر keder = քէտէր «վիշտ, ցաւ»; هديه hediyye = hediye = հէտիյէ «նուէր, ընծայ»; يدك yedek = յէտէկ «պահեստի»; زندان zəndan = զըն-

տան «զնդան»; سدف sedef = սէտէֆ «սատափ»; قدوز kuduz = խուտուզ «կատաղած (շուն)»; كچيد gečid = կէչիտ «անցք» ևն։

ض — قاضى kadə = խատը «դատաւոր»; قاضى‌كوى kadəköy = խատըքէօյ «Քաղկեդոն, Գատըգիւղ»; خضر الياس xədərülyas = xədrellez = խըտրէլլէզ «գարուն և ամառ»։

ط — طمر damar = տամար «երակ»; آطه ada = ատա «կղզի»; طماغ damaġ = տամաղ «քիմք»; طياق dayak = տայախ «ծեծ, նեցուկ»; طيانقلى dayanəklə = տայանըխլը «դիմացկուն»; طورلاق dorlak = տօրլախ «ծոյլ, դանդաղկոտ»; طاز daz = տազ «ճաղատ»; طاره dara = տարա «ապրայ»; طارى darə = տարը «կորեակ»; طاغتمق daġətmak = տաղըթմախ ընել «ցրուել, բաշխել»; طانه dana = տանա «հորթ»։

ت — تيمور timur = demir = տէմիր «երկաթ»; تيمورجى timurǰə = demirǰi = տէմիրճի «երկաթագործ»; تمغا tamġa = damga, damġa = տամղա «կնիք, դրոշմ»; تمغالى tamġalə = damġalə, damgalə = տամղալը «դրոշմեալ»; تباشير tebašir = tebešir = տէպէշիր «կաւիճ»։

f.

1. Ժղ. Թրք. f ձայնը = գրակ. Թրք. ف f = հայ. ֆ. Օրինակ՝ فرطونه furtuna = ֆուրթունա «փոթորիկ»; فرمان ferman = ֆէրման «հրովարտակ»; فلز filiz = ֆիլիզ «ընձիւղ»; فقير fakir = fakər = ֆախըր «աղքատ»; فراجه feraǰe = ֆէրաճէ «օթոց, կրկնոց»; دف def = tef = թէֆ «դափ»; كيف keyf = քէֆ «ուրախութիւն, զուարճութիւն, ուրախ տրամադրութիւն, քմահաճոյք»; كوف küf = քիւֆ «մգլահոտութիւն»; صافى safi = սաֆի «միայն, զուտ, պարզ»; قطايف kataif = kadayif = խատայիֆ «խմորեղէն մը»; سفيل sefil = սէֆիլ «խեղճ, թշուառ»; آفرين aferin = áferim = աֆէրիմ «կեցցե՛ս, ապրի՛ս» ևն։

2. Ժղ. Թրք. f ձայնը կրնայ գալ նաև գրակ. Թրք. خ x, و v և ح h ձայներէն. այսպէս են՝ صلح sulh = sulf = սուլֆ «հաշտութիւն»; خوطوز xotoz = fotoz = ֆօթօզ «կա-

նանց յատուկ՝ գլուխ կապելու լաթ»; وشنه višne = fišne = Ֆիշնէ «բալ»; وسوسه vesvese = fesfese = Ֆէսֆէսէ «կասկած, մտատանջութիւն»։

g.

Ժղ. Թրք. g ձայնը ունի հետեւեալ համապատասխանութիւնները.

1. Ժղ. Թրք. g = գրակ. Թրք. ك g = հայ. կ։ Օրինակ՝ كل gül = կիւլ «վարդ»; كليشى كوزل geliši güzel = կէլիշի կիւզէլ «ըստ պատահման»; كيجه‌لك gijelik = gejelik = կէճէլիկ «գիշերազգեստ»; خركله xergele = hergele = հէրկէլէ «որմուղ ձի»; ديدركن dedirgin = տէտիրկին «տատանդական, վտարանդի»։

2. Ժղ. Թրք. g = գրակ. Թրք. غ g = հայ. կ։ Օրինակ՝ غاز gaz = կազ «քարիւղ»; غاغه gaga = կակա «կտուց»; غوجوق goǰuk = կօճիկ «հովուական վերարկու»; غرغره gargara = կառկառա «բերանը ողողել, խաղաջ»։

3. Ժղ. Թրք. g = գրակ. Թրք. غ ġ = հայ. ղ։ Օրինակ՝ قرلانغج kərlanġəǰ = kərlangəǰ = խըռլանղըճ «ծիծեռնակ»; قارغه karġa = karga = խառղա «ագռաւ»; تمغا tamġa = damga = տամղա «կնիք, դրոշմ»։

4. Ժղ. Թրք. g = գրակ. Թրք. غ g = հայ. ղ։ Օրինակ՝ قانغال kangal = kangal = խանղալ «ոլոր, դալար»; مانغال mangal = mangal = մանղալ «կրակարան, ձեռքի վառարան»; مانغر mangər = mangər = մանղըր «դանգ, խեբէշ»; طولغون dolgun = dolgun = տօլղուն «լի, ատոք»։

ġ.

1. Ժղ. Թրք. ġ ձայնը կը համապատասխանէ միշտ գրականին غ ղ ձեւին. Նոյն ձայնը մեր փոխառութեանց մէջ կ՚առնայ ղ և խ ձեւերը։ Օրինակ՝

ղ = غ — باغرساق bağərsak = պաղըրսախ «աղիք»; دغدغه

dağdağa = տաղտաղա «հոգ, նեղութիւն, ձանձրացուցիչ ըզ-բաղում»; طوغوش doġuš = տօղուշ «ծնունդ, բնութիւն»: صاغناق saġanak = սաղանախ «տեղատարափ»; صاغ saġ = սաղ «ողջ, կենդանի»; صاغلام saġlam = սաղլամ «ամբողջ, անարատ»; یاغمه yaġma = յաղմա «աւար»։

խ = غ — Այսպէս կը լինին՝

*Բոլոր այն غ-երը՝ որոնք յառաջացած են ծանր ق-ով վերջացող բառերու ածանցմամբ։ Օրինակ՝* قباق kabak = խապախ «դդում» և صاقز قباغى sakəz kabaġə = սախըզ խապախի «տեսակ մը դդում»; بالق balək = պալըխ «ձուկ» և قليج بالغى kələǰ baləġə = խըլըճ պալըխի «թրաձուկ»; اوجاق oǰak = օճախ «վառարան» և قهوه اوجاغى kahve oǰaġə = խախվէ օճախի ևլն.։ *Այս հաշուով հայերէնի մէջ բառը ածանցման ժամանակ փոփոխութիւն չի կրեր։*

2. *Ժղ. Թրք.* ġ *ձայնը կը համապատասխանէ նաև գրական* ق k *ձևին, որ հայերէնի մէջ ալ կը մնայ* ղ. *այսպէս՝* لقب lakab = laġab = լաղապ «մականուն»։

h.

*Ժղ. Թրք.* h *կը ներկայացնէ հետևեալ համապատասխանութիւնները.*

1. *Ժղ. Թրք.* h = *գրակ. Թրք.* ح h = *հայ.* հ։ *Օրինակ՝* حمال hammal = hamal = համալ «բեռնակիր»; حامجى hamamǰə = համամճի «բաղնեպան»; حشارى hašarə = հաշարի «անառակ»; حلاج hallaǰ = halaǰ = հալաճ «բուրդ գզող»; محجوب mahǰub = մահճուպ «ամօթահար»; محروم mahrum = մահրում «զուրկ»; سلاح silah = սիլահ «զէնք»։

2. *Ժղ. Թրք.* h = *գրակ. Թրք.* ه h = *հայ.* հ։ *Օրինակ՝* هوا heva = hava = հավա «օդ»; هيئت heyyet = hiyet = հիյէթ «կերպարանք»; همان heman = hemen = հէմէն «իսկոյն»; هله hele = հէլէ «նամանաւանդ»; هفته‌لق haftalək = հաֆտալըխ «շաբաթական վարձք» ևլն.։

3. *Ժղ. Թրք.* h = *գրակ. Թրք.* ع *(որ չի հնչուիր)* =

հայ. հ: Օրինակ՝ ساعت sa'at=sahat=սահաթ «ժամ, ժամա-ցոյց»; متاع meta'=matah=մաթահ «ապրանք»; صناعت səna'at =senahat=զէնահաթ «արհեստ» ևլն.:

4. ժղ. թրք. h = գրակ. թրք. ح h = հայ. խ: Օրի-նակ՝ احمق ahmak=ախմախ «ապուշ»; احباب ahbab=ehbab, ahbab = ախպապ, էխպապ «բարեկամ, մտերիմ»; احتياج ihtiyaǰ = ehtaǰ = էխտաճ «կարօտ»; حلقه halka = խալխա «օղակ»; قدح kadeh=խատէխ «բաժակ»; تسبيح tesbih=tezbih =թէզպէխ «համրիչ»; حصير hasər=խըսիր «փսիաթ»; محتاج muhtaǰ=mühtaǰ=միւխտաճ «կարօտ»:

5. ժղ. թրք. h=գրակ. թրք. ه h=հայ. խ: Օրինակ՝ قهوه kahve=խախվէ «խահուէ. 2. սրճարան»; كهيا kehya= քէխիյա «թաղապետ»; كلاه külah=քիւլախ «կնգուղ, գըլ-խանոց»:

6. ժղ. թրք. h=գրակ. թրք. ف f=հայ. հ: Օրինակ ունինք՝ مفلس mürlis= mühlüz=միւհլիւզ «սնանկ»:

7. ժղ. թրք. h = գրակ. թրք. خ x = հայ. հ. Մնչ. ذخيره zaxire=zahre=զահրէ «նպարեղէն»; خفيف xafif=ha-fif=հաֆիֆ «թեթեւ»; خلاط xalat=halat=հալատ «հաստ չուան»; يخنى yaxni=yahni=յահնի «տեսակ մը կերակուր»:

ǰ.

1. ժղ. թրք. ǰ=գրակ. թրք. ج ǰ=հայ. ճ: Օրինակ جبا ǰaba=ճապա «ձրի»; جبه ǰübbe=ճիւպպէ «վերարկու»; جورجونه ǰurǰuna=ǰurǰina=ճուրճինա «խեղկատակութիւն»; حاجى haǰi=հաճի «մահտեսի»; جويز ǰeviz=ճէվիզ «ընկոյզ»; بوجك böǰek=պէօճէկ «ճճի, միջատ»; آووج avuǰ=ավուճ «ափ»; كيرج kireǰ=քիրէճ «կիր»; قصقانج kəskanǰ=խըսխանճ «նախանձոտ» ևլն.:

2. ճ ձայնին համապատասխան ձեւով ǰ ձայնն ալ բա-ղաձայնէ առաջ հայ փոխառութեանց մէջ կը վերածուի ծ-ի. ասոր համար ունինք وجدان viǰdan=վիծտան «խիղճ» օրինակը:

3. Տես ž:

k.

*Ժղ. Թրք.* k *ձայնը կը ներկայացնէ հետեւեալ համապատասխանութիւնները.*

1. *Ժղ. Թրք.* k=*գրակ. Թրք.* ق k=*հայ.* խ. *Օրինակ՝* قالچه kalča=խալչա *«զիստ, ազդր»*; قتيق kətək=խըթըխ *«խծուծ»*; قزاق kəzak=խըզախ *«սահնակ»*; باشقه baška=պաշխա *«ուրիշ»*; بارداق bardak=պարտախ *«գաւաթ»*; اقبال ikbal=իխպալ *«բախտ, յաջողութիւն»*; اشقيا eškəya=էշխիյա *«աւազակ»*; قرقاياق kərkayak=խըրխայախ *«օձասանդր» ևլն. ևլն.։ Այս ընդհանուր և շատ սովորական կանոնին իբր բացառութիւն պէտք է հաշուել՝*

2. *Ժղ. Թրք.* k=*գրակ. Թրք.* ق k=*հայ.* ք. *Օրինակ՝* آووقات avokat=abukat=ապուքաթ *«փաստաբան»*; آنتيقه antika=անթիքա *«հնութիւն»*; بانقه banka=պանքա *«դրամատուն»*; بالقون balkon=պալքօն *«պատշգամբ»*; لوقانده lokanda=lokanta=լօքանթա *«ճաշարան»*; انبيق inbik=իմպիք *«թորակ»*; آتاق atak=atik=աթիք *«խիզախ, ժիր»*; دقيقه dakəka=takke=թաքկէ *«վայրկեան»*; ذوق zevk=zefk=զէվկ *«ուրախութիւն, զուարճութիւն»*; *և ասոնց նման ուրիշ քանի մը հազուադէպ բառեր, ամենամեծ մասը օտար, եւրոպական լեզուներէ փոխառեալ։*

3. *Ժղ. Թրք.* k=*գրակ. Թրք.* ك k=*հայ.* ք. *Օրինակ՝* كمور kömür=քէօմիւր *«ածուխ»*; كوك kök=քէօք *«արմատ»*; كرتنكلر kertenkeler=kertenkele=քէրթէնքէլէ *«մողէս»*; سكسان seksen=սէքսէն *«ութսուն»*; بكرى bekri=պէքրի *«սոսկալի գինեմոլ»*; حكيم hekim=հէքիմ *«բժիշկ»*; ديكن diken=tiken=թիքէն *«փուշ» ևլն.։ Այս ալ ընդհանուր և սովորական ձևն է գրակ. Թրք.* ك k *ձայնին։*

4. *Ժղ. Թրք.* k=*գրակ. Թրք.* ك k=*հայ.* կ. *Այս փոփոխութիւնը տեղի կունենայ միայն բառին վերջը և այն պարագային միայն, երբ այս* k *ձայնը Թուրքերէնի մէջ ածանցման կամ հոլովման ժամանակ կը վերածուի* y *կամ* g *ձայներուն. ինչ.* فشنك fišenk=*սեռ.* tišengin,

ուստի և հայ. ֆիշէնկ=«փամփուշտ»; دوشك döšek=սեռ. döšeyin, տրակ. döšeye, ուստի և հայ. տէօշէկ «անկողին»։ Այսպէս են՝ كيجه‌لك gijelik = gejelik = կէճէլիկ «գիշերազգեստ»; سيليك silik = սիլիկ «սրբուած, մաշած (դրամ)»; ديرك direk = տիրէկ «գերան»; اشك ešek = էշէկ «էշ»; شبك šebek=շէպէկ «կապիկ մը»; دستك destek=տէստէկ «նեցուկ, յեցակ» ևլն. ևլն. ևլն.։—Ասոր հակառակ այն բառերը՝ որոնց վերջաւոր k-ն փոփոխութիւն չի կրեր հոլովման կամ ածանցման ժամանակ, նոյնպէս անփոփոխ կը մնան հայերէնի մէջ։ Օր. كوك kök, սեռ. kökin=հայ. քէօք «արմատ»; كورك kürk, սեռ. kürkün=հայ. քիւրք «մուշտակ» ևլն.։

Նոյն փոփոխութիւնը տեղի կ'ունենայ նաև բառի մէջ խ, ս ևլն. բաղաձայններուն քով։ Օր. تذكره tezkere=թէսկէրէ «անցագիր»; عسكر asker=ասկէր «զինուոր»; اسكمله iskemle=իսկէմլի «աթոռ»; اسكله iskele=իսկէլէ «նաւամատոյց»; اختيار ixtiyar=էխտիյար «ծեր»; اختبار ixtibar=էխտիպար «յարգ, արժանիք» ևլն. ևլն.։

5. Ժղ. Թրք. k=գրակ. Թրք. ق k=հայ. կ։ Այս փոփոխութիւնը կը պատահի միայն հետևեալ օրինակներուն մէջ. حقه‌باز hokkabaz=օկկապազ «ձեռնածու»; قولوچقه koločka=կօլօչկա «թուխս»; قوپچه kopča=կօփճա «կոճակ»; قلابدان kəlabdan=կըլապտան «ոսկեթել»; قلبه kulibe=կուլիպէ «խրճիթ»; قازينو kazino=կազինօ «եւրոպական սըրճարան»; قارنابيت karnabit=կառնապիթ «ծաղկակաղամբ»; قوچان kočan=կօչան «կաղամբի կուրծ»; قوليوه koliva=կօլիվա «հատիկ (ցորենով քաղցրեղէն մը)»։

6. Ժղ. Թրք. k=գրակ. Թրք. ك k=հայ. խ։ Կը պատահի խիստ քիչ անգամ. այսպէս՝ ايكنه‌لك iynelik=իյնէլիխ «ասղամանն»; فتنه‌لك fitnelik=ֆիթնէլիխ «վրան ոսկեթել փաթթելու փայտերու ամանը» ևլն.։

7. Ժղ. Թրք. k=գրակ. Թրք. غ ġ=հայ. խ. այս երևոյթը կը պատահի միայն բառասկզբին. ինչ. غيب ġayb=kayəb=խայիպ «կորուսիլ»; غمسز ġamsəz=kamsəz=խամսըզ «անհոգ»; غيرى ġayri=kayrə=խայրի «ուրիշը, բացի,

*այլ եւս*»; غيطان ġaytan=kaytan=խայյթան «*լար, առասան*»; غماز ġammaz = kamaz = խամազ «*բանսարկու, բսու*»; غنچه =ġonče=konča= խօնչա «*կոկոն*»։

l.

1. *ժղ. Թրք.* l=*գրակ. Թրք.* ل l=*հայ.* լ։ *Օրինակ՝* طلسم təlsəm=tələsəm=թըլըսըմ «*յուռութ*»; قيل kəl=խըլ «*բաշ, մազ*»; مال mal=մալ «*ապրանք*»; ملّت millet=միլլէթ «*ազգ*»; بال bal=պալ «*մեղր*»; لاله lale=լալէ «*կակաչ*»; لايق layək=լայէխ «*արժանաւոր, արժանի*»; لبلبی leblebi= լէպլէպի «*խորոված սիսեռ*»։

2. *ժղ. Թրք.* l=*գրակ. Թրք.* ن n=*հայ.* լ։ *Այսպէս են հետեւեալ օրինակները.* فنجان finǰan=filǰan=ֆիլճան «*բաժակ*»; خرچين xərčən=xərčəl=խըռչըլ «*անընտել, մարդամօտիկ չեղող*»; جهنم ǰehennem=ǰehellem=ճէհէլլէմ «*դըժոխք*»; تمنا temenna=temellah=թէմէլլահ «*տաճկական յարգալից բարեւ*»։

3. *ժղ. Թրք.* l=*գրակ. Թրք.* د d, ر r=*հայ.* լ. *Այսպէս՝* ياصدانمق yasdanmak=yaslanmak=յասլանմիշ ըլ-լալ «*կռթնիլ, ընկողմանիլ*»; زنجير zenǰir=zinǰil=զինճիլ «*շղթայ*»։

m.

1. *ժղ. Թրք.* m=*գրակ. Թրք.* م m=*հայ.* մ։ *Օրի-նակ՝* موميا mumya=momya=մօմյա «*զմռսեալ դի*»; موصلق musluk=մուսլուխ «*ծորակ*»; مائی mai=mavi=մավի «*երկ-նագոյն կապոյտ*»; موم mum=mom=մօմ «*մոմ*»; بلغم belġam=balgam=պալղամ, պալղամ «*մաղաս*»; حمامجی hammamǰə=hamamǰə=համամճի «*բաղանեպան*» *եւն. եւն.*։

2. منجم müneǰǰim *բառին մէջ վերջատառ* m *ձայնը* պ-*ի վերածուելով՝ բառս դարձած է հայ.* միւնէճճիպ «*աստղաբաշխ*»։

n.

1. Ժղ. Թրք. n=գրակ. Թրք. ن n=Հայ. Ն։ Օրինակ՝ نعنع nana=nane=նանէ «անանուխ»; نعره na're=nağara=նաղարա «գոչիւն, աղաղակ»; نظر nazar=նազար «չար աչք»; قوناق konak=խօնախ «ապարանք»; قونداق kundak=խունտախ «խանձարուր»; طاوشان tavšan=թաւշան «նապաստակ»; كمان keman=քէման «ջութակ»; صمان saman=սաման «յարդ» ևլն.։

2. Ժղ. Թրք. n=գրակ. Թրք. ڭ n=Հայ. Ն։ Օրինակ՝ سكير sinir=սինիր «ջիղ, նեարդ»; يوڭ ايپكى yün ipeyi=յիւնիփէյի «բրդեայ թել»; يكاق yanak=յանախ «այտ»; بكز benz=պէնզ «երեսի գոյն»; چكه čene=čenye=չէնյէ «կը-զակ»; بكزتمك benzetmek=պէնզէթմիշ ընել «նմանցնել» ևլն։

3. Ժղ. Թրք. n=գրակ. Թրք. ڭ n=Հայ. Ղ։ Այսպէս են՝ صكره sonra=սօղրա «յետոյ»; ياكلش yanləš=յաղըլշ «սխալ»; ياكلمق yanəlmak=յաղըլմիշ ըլլալ «սխալիլ»։

4. Ժղ. Թրք. n=գրակ. Թրք. ل l=Հայ. Ն. այսպէս է سلسله silsile=sinsile=սինսիլէ «ազգատոհմ, դերդաստան»։

p.

1. Ժղ. Թրք. p=գրակ. Թրք. پ p=Հայ. Փ։ Օրինակ՝ پاى pay=փայ «բաժին»; پرمقلق parmaklək=փարմախլըխ «վանդակապատք»; پلاو pilav=փիլավ «բրինձ»; پنبه penbe=pembe=փէմպէ «վարդագոյն բաց կարմիր»; پيره pire=փիրէ «լու»; تپه tepe=թէփէ «գագաթ, բլուր»; چوپ čöp=չօփ «աղբ»; سوپوركه süpürge=սիւփիւրկէ «աւել»; صوپا sopa=սօփա «բիր»; تورپ turp=թուրփ «բողկ» ևլն.։

2. Ժղ. Թրք p=գրակ. Թրք. ب b=Հայ. Փ։ Օրինակ՝ محبس mahbes=mapus=մափըս «բանտ»; ضبطيه zabtiyye=zaptiye=զափտիյէ «ոստիկան»; حبس habs=hapəs=հա-

փըս «բանտ» եւն.: Ասոնց մէջ բ վերածուած է փ-ի քովի բաղաձայններուն խուլութեան պատճառաւ։

ր.

1. Ժղ. Թրք. ր=գրակ. Թրք. ر ր=հայ. ր: Օրինակ՝ درهم dirhem = direm = տրամ «տաճկական գործածական ամենափոքր կշիռը, 1/400 մաս օխայի»; دیری diri = տիրի «ողջ, կենդանի»; دیرك direk = տիրէկ «գերան»; سپورکه süpürge = սիւփիւրկէ «աւել»; سرپمق serpmek = սէրփմիշ ընել «սրսկել»; زهر zehr = zehir = զէհիր «թոյն» եւն.:

2. Ժղ. Թրք. ր=գրակ. Թրք. ر ր=հայ. ռ: Օրինակ՝ سرای seray = saray = սառայ «պալատ»; ترلا tarla = թառլա «ածու, արտ»; تکرلك tekerlek = թէքէռլախ «անիւ»; بورشمق burušmak = պուռռուշմիշ ըլլալ «կծկիլ, փոթոթիլ»; زره zərh = zərx = զըռխ «զրահ» եւն եւն.:

3. Ժղ. Թրք. ր = գրակ. Թրք. ی y = հայ. ր. այսպէս է միայն جامه‌شوی ǰamešuy = čamašer = չամաշըր «լուացք» բառին մէջ:

4. Ժղ. Թրք. ր=գրակ. Թրք. ر ր=հայ. լ ունին հետեւեալ բառերը. ارتیق artək = ալթըխ «ալ, այլ եւս», հայերէն ալ հոմանիշին լ-ին պատճառաւ; شرنقه širinka = շիլինկա «գրեխ»:

5. Իսկ Թրք. ր-ով սկսող բառերը հայերէնի մէջ բուն հայկական արտասանութեան օրէնքներուն համեմատ կըստանան ը, ի, օ, ու ձայնաւորները. այսպէս՝ ու, եթէ յաջորդ ձայնաւորը ու է. օ՝ եթէ յաջորդ ձայնաւորը օ է. ի՝ եթէ յաջորդ ձայնաւորը ի է. իսկ ը՝ եթէ յաջորդ ձայնաւորը ը, է կամ ա է: Օրինակ՝

ը.—راحت rahat = ըռահաթ «հանգիստ»; رقم rakam = ըռախամ «թիւ, թուանշան»; رنده rende = ըռէնտէ «քերիչ»; رشوت rišvet = rəšvat = ըռըշվաթ «կաշառք»; ریختم rixtim = rəxtəm = ըռըխտըմ «քարափ» եւն.:

ի.—رجا reǰa = riǰa = իրիճա «խնդիրք, աղաչանք»:

օ.—روسپی rospi = օռօսպու «բոզ»; բացառաբար روم rom կը գտնուի ըռօմ «բարկօղի»։

ու.—رخصت, ruxsat=ուռուխսաթ «արտօնութիւն, հրաման»; ربع rub = ուռուպ «¹/₈ արշըն»; روح ruh = ուռուֆ «ոգի»։

s.

1. Ժղ. թրք. s=գրակ. թրք. س s=հայ. ս։ Օրինակ՝ سيل seyl=sel=սէլ «հեղեղ»; سلسله silsile=sinsile=սինսիլէ «դերդաստան, ազգատոհմ»; سمر semer=սէմէr «համետ»; سميز semiz = սէմիզ «պարարտ»; كسر keser = fէսէr «ուրագ»; كاسه kyase=fյասէ «պնակ»; پوست post=փօսs «կաշի, մորթ»; سوس süs=սիւս «զարդարանք» ևլն.։

2. Ժղ. թրք. s=գրակ. թրք. ص s=հայ. ս։ Օրինակ՝ صوجوق sujuk = սուճուխ «երշիկ»; صوك son = սօն «վերջ»; صيقى sәkә=սըխը «պինդ, սեղմ»; پوص pus=փուս «մշուշ»; صوص sus= սուս «լուռ»; خالص xalis=halis=հալիս «զուտ, մաքուր»; ياصي yasә=յասը «տափակ»; قصاب kassab = kasab =խասապ «մսագործ, մսավաճառ»։

3. Ժղ. թրք. s=գրակ. թրք. ث s=հայ. ս։ Օրինակ՝ ثواب sevab=սէվապ «բարի գործք, վարձք»; ثقلت sәklet= սըխլէթ «տխրողական»; ثعلب saleb = սալէպ «տեսակ մը ըմպելի»: اثبات isbat = իսպաթ «դատարանի մէջ վաւերացում, ապացոյց»; اثر eser=էսէr «ամենադոյզն հետք, նշան»; مثقال mәskal=մսխալ «տրամ ու կէս»։

4. Ժղ. թրք. s=գրակ. թրք. ص s=հայ. զ. օրինակներն են՝ صوده soda=զօսա «կալաքար»; صوبه soba=զօպա «երկաթեայ վառարան»; صفرا safra=զաֆrա «մաղձ»; صفره safra=զաֆrա «նաւախիճ»։

5. Ժղ. թրք. s = գրակ. թրք. س s=հայ. զ. այսպէս են՝ سنبل sünbül=զիւմպիւլ «յակինթ ծաղիկը»; زيفوس zifos=զիֆօզ «տիղմի, ցեխի բիծ»։

š.

1. *Ժղ. թրք.* š = *գրակ. թրք.* ش š = *հայ.* c: *Օրի-նակ՝* شفق šefak = šafak = cɯɕɯ|u *«արշալոյս»*; شفتالو šeftalu = šeftali = cɛɕsɯղh *«դեղձ»*; شمار šamar = cɯմɯn *«ապ-տակ»*; شاسقين šaškən = cɯcխըն *«ապուշ»*; قاشاغى kašağə = խɯcɯղh *«ձիու քերիչ»*; يواش yavaš = յɯվɯc *«մեղմ»*; غروش ġuruš = խnւnnւc *«ղրուշ»*:

2. *Ժղ. թրք.* š = *գրակ. թրք.* š ش = *հայ.* ն *միայն* بويداش boydaš = պojյsɯն *«հասակակից» բառին մէջ:*

t.

1. *Ժղ. թրք.* t = *գրակ. թրք.* ت t = *հայ.* թ: *Օրինակ՝* تأثير teesir = teysir = թէյuհr *«ազդել»*; تيز tiz = tez = թէq *«շուտ»*; تيزه teyze = թէյqէ *«մօրաքոյր»*; توكللى tevekkülli = tevekelli = թէվէfէլլh *«պարզամիտ»*; طبيعت tabiat = tabiyet = թɯպhյէթ *«բնութիւն»*; دمت demet = sէմէթ *«տրցակ, փունջ»*; ستری setri = uէթrh *«վերարկու»*; كوتوك kütük = fhւթhւկ *«կոճղ»*; كوتروم kötrüm = fէoթrhւմ *«անդամալոյծ»*:

2. *Ժղ. թրք.* t = *գրակ. թրք.* ط t = *հայ.* թ: *Օրինակ՝* طلوم tulum = թnւլnւմ *«տիկ»*; طوان tavan = թɯվɯն *«ձեղուն»*; طيقاج təkaǰ = թըխɯն *«խից»*; قطران katran = խɯթrɯն *«կուպր»*; قطار katar = խɯթɯr *«շարք, երամակ, խումբ»*; خلط xalt = խɯլթ *«սուտ խօսք, անվայել գործք» են:*

3. *Ժղ. թրք.* t = *գրակ. թրք.* ط t = *հայ.* s: *Օրինակ՝* مسطر mistar = mastar = մɯusɯr «tire—ligne»; سقط sakat = uɯխɯs *«խեղ, խեղանդամ, կոտրուած»*:

4. *Ժղ. թրք.* t = *գրակ. թրք.* ت t = *հայ.* s: *Օրինակ՝* مختار muxtar = məktar = մըխsɯr *«թաղապետ»*; يوغورت yoġurt = յoղnւrs *«մածուն»*; مشترى müšteri = մhւcsէrh *«յա-ճախորդ»*; افترا iftira = hɕshrɯ *«զրպարտութիւն»*; نفت neft = նէɕs *«նաւթ»*; ايرت ayərt = ɯյըrs *«ջոկել, զանազա-նել» են. են: Այս փոփոխութիւնը կը կատարուի մա-*

նաւանդ ծ, խ, ս ձայներէն յետոյ՝ բուն հայկական ձայնաբանական օրէնքներով։

5. ժղ. Թրք. t=գրակ. Թրք. ث s=հայ. թ՝ կը պատահի միայն مثقب maskab = matkab = մաթխապ «շաղափ» բառին մէջ։

6. ժղ. Թրք. ts=գրակ. Թրք. تس ts ձայնը հայկական փոխառութեանց մէջ բնիկ հայկական օրէնքով կը դառնայ ծծ. այսպէս են՝ توتسی tütsü = թիւծծիւ «ծխում, ծխել»; یاتسی yatsə = յածծը «մահմետականաց գիշերային աղօթքի հրաւէր»։ Ասոնց հետ հմմտ. նաև բուն հայ. իծծուն=*իթսուն=յիսուն, վածծուն=վաթսուն։

V.

1. ժղ. Թրք. v=գրակ. Թրք. و v=հայ. վ։ Օրինակ՝ ویرانه virane = verane = վէրանէ «աւերակ»; ورم verem = վէրէմ «թոքախտ»; وقت vakət = վախիս «ժամանակ»; صیوا səva = սըվա «ծեփ»; دعوی dava = տավա «դատ»; چاو čav = չավ «տարաձայնութիւն»; تاو tav = թավ «յարմար աստիճան»; مناو manav=մանավ «մրգավաճառ» Էլն.։

2. ժղ. Թրք. v=գրակ. Թրք. غ ġ=հայ. վ։ Օրինակ՝ قلاغوز kəlaġuz = kəlavuz = խըլավուզ «առաջնորդ»; طاغوق taġuk=tavuk=թավուխ «հաւ»; قوغا koġa = kova = խօվա «դոյլ»; قغوش koġuš = kovuš = խօվուշ «մեծ սրահ»; قوغوق koġuk = kovuk = խօվուխ «խոռոչաւոր»; قوغالمق koġalamak =kovalamak=խօվալամիշ ընել «հալածել» Էլն.։

3. ժղ. Թրք. v=գրակ. Թրք. ه h=հայ. վ։ Այսպէս է يهودی yehudi=yavudi=յավուտի «հրեայ»։

4. ժղ. Թրք. v=գրակ. Թրք. و v=հայ. ղ։ Այսպէս է جواب ǰevab=ճօղապ, ճուղապ «պատասխան»։

5. ժղ. Թրք. v՝ անցնելով m ձևէն, կուգայ գրակ. Թրք. ن n ձայնէն միայն نردبان nerdüban=merdiven, verdiven=վէրտիվէն «սանդուխ» բառին մէջ։

x.

1. *ծղ. թրք.* x = *գրակ. թրք.* خ x = *հայ.* խ։ *Օրինակ՝* خدمت xədmet = xəzmet = խըզմէթ «*ծառայութիւն*»; خردوات xurdevat = xurdavat = խուրտավաթ «*մանր մունր, հին ու մին բաներ*»; خردوخاش xurduxaš = խուրտուխաշ «*ջախջախել, ջարդուած*»; سختيان saxtiyan = սախտիյան «*կաշիի տեսակ մը*»; میخانه meyxane = մէյխանէ «*գինետուն*»; رخت raxt = ըռախտ «*դրան կամ պատուհանի փեղկ*» ևն.։

2. *ծղ. թրք.* x = *գրակ. թրք.* ه h = *հայ.* խ։ *Օրինակ՝* زره zərh = zərx = զըրխ «*զրահ*»; زرخلی zərhlə = zərxlə = զըրխլը «*զրահաւոր*»։

y.

1. *ծղ. թրք.* y = *գրակ. թրք.* ی y = *հայ.* յ (y)։ *Օրինակ՝* یبانجی yabanǰə = յապանճը «*օտար*»; یبانی yabani = յապանի «*վայրենի*»; یپاغی yapağə = յափաղը «*բուրդ*»; بویا boya = պոյա «*ներկ*»; بیطار beytar = paytar = փայթար «*անասնաբոյժ*»; بیاغی bayağə = պայաղը «*հասարակ, սովորին*»; چاریك čaryek = čeyrek = չէյրէկ «*քառորդ*» ևն.։

2. *ծղ. թրք.* y = *գրակ. թրք.* ك y = *հայ.* յ։ *Օրինակ՝* تكل teyel = թէյէլ «*տեսակ մը կար*»; ایكید igid = իյիտ «*կորիճ, քաջ*»; ایكنه‌لك iynelik = իյնէլիխ «*ասղնաման*»; گكرمك geyirmek = կէյիրմիշ ըլլալ «*դիմանալ*»; سكرك seyrek = սէյրէկ «*ցանցառ*»։

3. *ծղ. թրք.* y = *գրակ. թրք.* ك g = *հայ.* յ. *այսպէս՝* جكر ǰiger = ǰiyer = ճիյէր «*թոք, լեարդ*»; زوكورت zügürt = züyürt = զիւյիւրտ «*աղքատ, անկուտի*»։

z.

1. *ծղ. թրք.* z = *գրակ. թրք.* ز z = *հայ.* զ։ *Օրինակ՝* زوربا zorba = զօռպա «*բռնաւոր, բռնակալ*»; زیان ziyan =

զիյան «վնաս»; زيتون zeytun=զէյթին «ձիթապտուղ»; زوللو zevallu=zavallə=զավալլը «խեղճ, ողորմելի, թշուառ»; تازه taze=թազէ «թարմ»; سازنده sazende=սազէնտէր «նուագող, նուագածու»; صاز saz=սազ «կնիւն, պրտու»; یازیق yazək=յազըխ «աւաղ, ափսոս, մեղք»; قاز kaz=խազ «սագ»; قمارباز kumarbaz=խումարպազ «խաղամոլ»։

2. ժղ. թրք. z=գրակ. թրք. ذ z=հայ. զ։ Օրինակ՝ ذاتی zati=zatə=զաթը «արդէն»; ذخیره zaxire=zahre=զահրէ «նպարեղէն»; ذوق zevk=zetk=զէֆկ «զուարճութիւն, խնջոյք. 2. ծաղր»; ذره zerre=զէրրէ «հիւլէ, ամենափոքր մաս մը»; عذر özr=özür=էօզիւր «չքմեղանք, արդարացում»; اذن izn=izin=իզին «արտօնութիւն, թոյլտուութիւն»; رذیل rezil=ըռէզիլ «խայտառակ»։

3. ժղ. թրք. z=գրակ. թրք. ظ z=հայ. զ։ Օրինակ՝ ظریف zarif=զարիֆ «սիրուն, գեղեցիկ»; ظالم zalim=zaləm=զալիմ «բռնակալ, անգութ»; ظن zann=զաննը «կարծիք»; حظ hazz=haz=հազ ընել «ախորժիլ»; مظلوم mazlum=mazləm=մազլըմ «հեզ, խոնարհ»; حافظ hafəz=հաֆըզ «տաճկական կրօնաւորական աստիճան մը»; محافظه muhafaza=մուհաֆազա «պահել, պահպանել»։

4. ժղ. թրք. z=գրակ. թրք. ض z=հայ. զ։ Օրինակ՝ عرض ərz=ըրզ «ամօթ, պատիւ, արժանապատուութիւն»; عرضحال arzuhal=արզուհալ «աղերսագիր»; ضعيف zaif=զայիֆ «նիհար»; ضرر zarar=զարար «վնաս»; ضد zədd=zət=զըթ «հակառակ»; ضابط zabit=զապիթ «ոստիկան»; قضا kaza=խազա «փորձանք»; اعضا aza=ազա «ժողովքի անդամ»; غضب ġazeb=խազէպ «պատուհաս»; غرض garaz=խարէզ «վրէժ, ոխ»։

5. ժղ. թրք. z=գրակ. թրք. س s=հայ. զ։ Օրինակ են՝ سبزوات sebzevat=zavzavat=զավզավաթ «բանջարեղէն, կանաչեղէն»; سبيل sebil=zebil=զէպիլ «տաճկական սովորութեամբ մեռելոց յիշատակին ջուր բաշխել»; سبيلجی sebilǰi=zebilǰi=զէպիլճի «ջուր բաշխող ի յիշատակ

*մեռելոց»*; سلسبيل selsebil=zerzebil=զէրզէպիլ *«ձեղունէն կախուած ցնցուղ ջուր սրսկելու համար»*։

6. *Ժղ. Թրք.* z = *գրակ. Թրք.* ص s = *հայ.* զ։ *Այսպէս են՝* صمغ samġ=zamk=զամխ *«խէժ»*; صرتلان sərtlan=zərtlan=զըռթլան *«բորենի»*; صناعت sənaat=zenahat=զէնաաթ *«արհեստ»*։

7. *Ժղ. Թրք.* z = *գրակ. Թրք.* د d = *հայ.* զ։ *Օրինակ են՝* خدمت xədmet=xəzmet=խըզմէթ *«ծառայութիւն, սպասաւորութիւն»*; خدمتكار xədmetkyar=xəzmetkyar=խըզմէթքյար *«ծառայ, սպասաւոր»*։

ž.

1. *Գրական Թուրքերէնը այս ձայնը կը ներկայացնէ* ژ ž *ձևով, բայց ընիկ Թրքական ձայն մը չէ. եղած սակաւաթիւ բառերը փոխառութիւն են պարսկերէնէ կամ ֆրանսերէնէ. ասոնցմէ առաջինները չեն մտած բուն ժողովրդական լեզուին մէջ. իսկ երկրորդները նոր փոխառութիւններ լինելով՝ նմանապէս գոյութիւն չունին դեռ ժողովրդական լեզուին մէջ. այլ ասոնց տեղ բուն ժողովրդական լեզուն կը գործածէ նոյներուն իտալական ձեւերը՝ որոնք քիչ մը աւելի հին են և որոնց մէջ* ž *ձայնին տեղ կը գտնենք* ǰ։ *Այսպէս է նաև հայ փոխառութեանց մէջ։ Օր.* ژاندارمه žandarma=ǰandarma=ճանտըրմա *«ոստիկան»=ֆրանս.* gendarme=*իտալ.* gendarme; ژورنال žurnal=ǰurnal=ճուռնալ *«ոստիկանական տեղեկագիր»=ֆրանս.* journal=*իտալ.* giornale; ژيمناستيق žimnastik=ǰəmlastik=ճըմլասթիկ *«մարմնամարզ»=ֆրանս.* gymnastique=*իտալ.* ginnastico, *աւելի հաւանական է անգլիերէնէ*։

*Հոս կը վերջանան մեր ձայնաբանական և ձայնախօսական քննութիւնները։ Վերոյիշեալ պարագաներուն մէջ եղան տեղեր՝ որ ժողովրդական լեզուն առանձին բացառութիւններ կամ ուրիշ տեսակ մանրամասնութիւններ*

ունենայ՝ համեմատութեամբ գրական լեզուին։ Մենք սակայն այդ մանրամասնութեանց մէջ չմտանք ամէն անգամ, որովհետև մեր նպատակը չէր Թուրքերէն ժողովրդական լեզուին մանրամասն համեմատութիւնն ընել գրական լեզուին հետ. այլ առաջ բերել անոր ամէնէն աւելի բնորոշ և ամէնէն աւելի ակնյայտնի երողութիւնները, երբ համեմատութեան միակ եզր Հայերէն փոխառեալ բառերու ձայնաբանական փոփոխութիւններուն։

Այս ձայնաբանական փոփոխութիւնները ի դիւրութիւն ընթերցողաց կ'ուզենք ամփոփել յաջորդ աղիւսակին մէջ։

## Ա. Ձայնաւորներ.

| Ժող. Թրք. | Գրակ. Թրք. | Հայ. |
|---|---|---|
| a | َ، ا، آ، ع، عا، ه a | ա (ը). |
| ay | یَ ay | այ (է). |
| ə | ِ، ا، ای، ع، عی، ی، اع ə (i) | ը (ի, է, ու). |
| o | ُ، ا، او، ع، وا، و o | o |
| u | ُ، ا، او، ع، عو، و u (ü) | ու (ի, ը). |
| e | َ، ا، ئه، ه e | է (ա, ու, o). |
| ey | یَ ey | էյ (է). |
| i | ِ، ا، ای، ع، عی، ی، اع i | ի |
| ö | ُ، او، ع، و ö | էօ |
| ü | ُ، ا، او، ع، و ü | իւ |

## Բ. Բաղաձայններ.

| Ժող. Թրք. | Գրակ. Թրք. | Հայ. |
|---|---|---|
| b | ب b | պ |
|  | ب b | փ |
| č | چ č | չ |
|  | چ č | ջ |
|  | چ č | ճ |

| | | |
|---|---|---|
| d | د d | տ |
| | ض d | տ |
| | ط d | տ |
| | ت t | տ |
| f | ف f | ֆ |
| | خ x | ֆ |
| | و v | ֆ |
| | ح h | ֆ |
| g | ك g | կ |
| | غ g | կ |
| | غ g | ղ |
| | غ ġ | ղ |
| ġ | غ ġ | ղ |
| | غ ġ | խ |
| | ق k | ղ |
| h | ح h | հ |
| | ه h | հ |
| | ع ’ | հ |
| | ف f | հ |
| | خ x | հ |
| | ح h | խ |
| | ه h | խ |
| ǰ | ج ǰ | հ, ժ |
| | ژ ž | հ |
| k | ق k | խ |
| | ق k | ք |
| | ق k | կ |
| | ك k | ք |

| | | | |
|---|---|---|---|
| | ك | k | կ |
| | ك | k | խ |
| | غ | ġ | խ |
| l | ل | l | լ |
| | ن | n | լ |
| | د | d | լ |
| | ر | r | լ |
| m | م | m | մ |
| | م | m | պ |
| n | ن | n | ն |
| | ك | n | ն |
| | ك | n | ղ |
| p | پ | p | փ |
| | ب | b | փ |
| r | ر | r | ր |
| | ر | r | ռ |
| | ى | y | ր |
| | ر | r | լ |
| s | س | s | ս |
| | ص | s | ս |
| | ث | s | ս |
| | ص | s | զ |
| | س | s | զ |
| š | ش | š | շ |
| | ش | š | ճ |
| t | ت | t | թ |

| | | | |
|---|---|---|---|
| | ط | t | թ |
| | ط | t | տ |
| | ت | t | տ |
| | ث | s | թ |
| ts | تس | ts | ծծ |
| v | و | v | վ |
| | غ | ġ | վ |
| | ہ | h | վ |
| | و | v | ղ |
| | ن | n | վ |
| x | خ | x | խ |
| | ہ | h | խ |
| y | ی | y | յ |
| | ك | y | յ |
| | ك | g | յ |
| z | ز | z | զ |
| | ذ | z | զ |
| | ظ | z | զ |
| | ض | z | զ |
| | س | s | զ |
| | ص | s | զ |
| | د | d | զ |
| (ž | ژ | ž | ժ) |

*4. Այս աղիւսակէն կը տեսնուի թէ եղած բոլոր ձայ-նաբանական պայմանները չորս խումբի կը վերածուին.*

*1. Թէ ժողովրդական Թուրքերէնի, թէ գրական Թուր-*

քերէնի և թէ հայկական փոխառութեանց մէջ նոյն ձայնը անփոփոխ կը մնայ։

2. Ժողովրդական Թուրքերէնը և հայկական փոխառութիւնները նոյն ձայնն ունին. բայց գրական Թուրքերէնը տարբեր է։

3. Ժողովրդական Թուրքերէնը և գրական Թուրքերէնը նոյն ձայնն ունին, իսկ հայկական փոխառութիւնները տարբեր են։

4. Ժողովրդական Թուրքերէնը տարբեր է, մինչդեռ գրական Թուրքերէնն ու հայկական փոխառութիւնները նոյն են։

Առաջին պարագային ոչ մի դիտողութիւն կայ ընելու. երկրորդ պարագան կ՚ապացուցանէ վերև ըսուածը թէ հայկական փոխառութիւնները ժողովրդական Թուրքերէնէն են և ամենևին գործ չունին գրականին հետ։ Կը մնայ քննել յաջորդ երկու պարագաները՝ որոնք մեր փոխառութիւններու պատմութեան վրայ նոր լոյս պիտի սփռեն։

Երրորդ պարագային մէջ հայկական փոխառութիւններուն տարբերութիւնը երկու տեսակ է.

1. Այս տարբերութիւնները յառաջացած են լոկ հայոց մէջ՝ հայերէն լեզուի ձայնաբանական օրէնքներուն համեմատ. այսպէս են՝ ts=ts=ծծ, č=č=c,ճ, r=r=ղ, t==s, ǰ=ǰ=ժ ձայնաշրջութիւնները՝ որոնց վրայ իրենց տեղը խօսուած ըլլալով աւելորդ կը համարենք նոյն խօսքերը երկրորդ անգամ կրկնել հոս։

2. Երկրորդ տեսակին կը պատկանին b=ب b=փ, ı =ك n=ղ, v=و v=ղ, k=ق k=խ, k=ق k=կ, k=ك k= խ, k=ك k=կ, g=غ g=ղ, ġ=غ ġ=խ, s=ص, س s=զ h=ح, ه h=խ, š=ش š=ճ, m=م m=պ ձայնաշրջութիւնները։ Այս ձայնաշրջութիւնները գոյութիւն չունենալով Պոլսոյ Թուրքերու ժողովրդական բարբառին մէջ՝ երկու կերպով կրնան մեկնուիլ. կամ այն է որ յառաջացած են բուն հայկական ձայնաբանական օրէնքներով,

կամ առնուած ըլլալու են ուրիշ ժողովրդական բարբառէ մը։

Առաջին մեկնութիւնը չկրնար ուղիղ ըլլալ, որովհետեւ հայնաբանական օրէնք մը՝ որպէս զի բնիկ հայկական ըլլայ, հարկաւոր է որ ամէնէն առաջ բնիկ հայկական բառերու վրայ ազդած ըլլայ։ Նախորդ պարագային մէջ՝ երբ մենք ընդունեցինք թէ ts=ts=ծծ, č=č=c, ճ ևլն. հայնափոխութիւնները բնիկ հայկական են, իրաւունք ունէինք այդպէս ընելու, քանի որ նոյն հայնափոխութիւններուն ենթակայ եղած էին նաեւ հայկական բառերը։ Իսկ ներկայ պարագային պատկանող հայնափոխութիւնները չենք գտներ հայերէնի մէջ։ Եթէ հայկական բառերն ալ ենթակայ եղած ըլլային այս հայնաբանական օրէնքներուն, պէտք էր որ ունենայինք *խաղախ = փխ. քաղաք, *խուր = փխ. քոյր, *խացախ = փխ. քացախ, *մաղրել = փխ. մանրել, *սաղ̇րել=փխ. սանտրել, *աղաճ=փխ. ականջ ևլն. այսպիսի ձեւեր, որոնք արդարեւ շատ ծիծաղելի են հայոց համար։ Իսկ եթէ այդ հայնաշրջութիւնները միայն և միայն Թրքականէն փոխառեալ բառերու վրայ ազդած են և այս տեսակ ազդեցութեան մը հետքն ալ չենք գտներ մեր բնիկ հայկական բառերուն վրայ, ուստի և նոյն հայնաշրջութիւնները չեն կրնար բնիկ հայկական ըլլալ։

Կը մնայ ուրեմն ընդունիլ թէ նոյն ձեւերը առնուած ըլլան ուրիշ ժողովրդական Թուրքերէն բարբառէ մը։

Եւ արդարեւ այս ձեւերը՝ որ գոյութիւն չունին Պօլսոյ Թրքական ժողովրդական լեզուին մէջ, կան սակայն Փոքր-Ասիոյ, Հայաստանի և Ատրպատականի Թրքական բարբառներուն մէջ։ Քննենք ուրեմն իւրաքանչիւրը առանձին առանձին։

k=ق k=խ.—ق k հայնը ամբողջ Անատօլուի, Ատրպատականի և մինչև իսկ Պարսկաստանի գրական լեզուին մէջ ստացած է ġ ղ հնչումը՝ ամէն դիրքով ալ։ Օրինակ՝ قاشيق، قوناق، قزلجق، قصراق բառերը՝ որոնք օսմաներէն (և

Պոլսոյ ժողովրդական բարբառով) kašək, konak, kəzəlǰək, kəsrak կը հնչուին, յիշուած տեղերուն մէջ ġašəġ, ġonaġ, ġəzəlǰəġ, ġəsraġ հնչումներն ունին։ Հին Թուրքերէնի մէջ (Ջաղաթայերէն, Արեւելեան Թուրքերէն. տես R. B. Shaw, A sketch of the turki language as spoken in eastern Turkistan (Kàshghar and Yarkand), Calcutta, 1880.—Vámbéry, čakataische sprachstudien, enthaltend grammatikalischen umriss, chrestomathie und wörterbuch, Leipzig, 1867.—Vámbéry, Etymologisches Wörterbuch der Turko-tatarischen Sprachen, Leipzig, 1878. — Pavet de Courteille, Dictionnaire Turk-Oriental, Paris, 1870 եւն.) միեւնոյն բառը կրնայ գրուիլ թէ ق-ով և թէ غ-ով, ինչ որ կը ցուցնէ թէ այս լեզուներուն մէջ ալ ق-ին բնիկ ձայնը ղ է։ Եւ մինչեւ իսկ ներկայ օսմանեան լեզուին մէջ ալ (թէ գրական և թէ ժողովրդական) բառավերջի ق-ը՝ հոլովման, խոնարհման և ածանցման ժամանակ՝ երբ յաջորդ ձայնաւորի մը վրայ իյնայ, կը վերածուի غ-ի և կը հնչուի ղ։ Այսպէս՝ օր. قوناق konak, սեռ. قوناغك konaġən; آلەجق alaǰak «պիտի առնէ», բայց آلەجغم alaǰaġəm «պիտի առնեմ»։

Այս ըսուածներէն կը հետեւի թէ ق-ին բնիկ, նախնական հնչումը ղ է տաճկերէնի մէջ, և յետոյ Պոլսոյ բարբառին մէջ վերածուած է մասամբ k-ի։

Սակայն մեր փոխառութիւններուն մէջ ղ-ի տեղ խ ունինք. սոր ալ պատճառը կրկին է. բառասկիզբի խ-երը կրնան բնիկ հայկական ձայնական օրէնքով նախաւոր ղ-է դարձած ըլլալ. ինչպէս ունինք խրկել = «ուղարկել, ղըրկել»; խաւրել = «ուղեւորել, ղաւրել»; խորդ = «ուղղորդ, ղորդ»։ Իսկ բառամէջի և բառավերջի խ-երը թերեւս յատուկ էին այն գաւառին Թրքական ժողովրդական լեզուին, ուր տեղէն որ գաղթած են Պոլսոյ հայոց նախնիքները։

Դիտ. — Այս հաշուով այն ق-երը որ հայկական փոխառութիւններուն մէջ խ-ի չեն վերածուած (տես վերը k, 2), այլ k են մնացած Պոլսոյ ժողովրդական Թուրքերէնի արտասանութեան համեմատ, փոխառեալ են ոչ թէ

Փոքր-Ասիոյ մէջ, այլ Պոլիս գաղթելէ ետք և Պոլսոյ Թուրքերէն։ Այսպէս են օրինակ իտալերէն, ֆրանսերէն, նոր յունարէն և ուրիշ եւրոպական լեզուի բառերը։

k=ك k=կ.—Ըսուեցաւ վերը թէ այս փոփոխութիւնը տեղի կ'ունենայ միայն բառին վերջը և մէն պարագային միայն, երբ այս k ձայնը Թուրքերէնի մէջ ածանցման կամ հոլովման ժամանակ կը վերածուի y կամ g ձայներուն. ինչ. فشنك fišenk, ديرك direk, دوشك došek ևլն.։ Անշուշտ այս բառերուն ալ նախնական հնչումը g-ով էր. այսպէս՝ fišeng, döšeg, direg, որոնց համեմատ ալ ուղիղ սեռականը կը կազմուէր։ Բայց այս g ձայնը՝ բառին ծայրը գտնուելուն պատճառաւ հետզհետէ թանձրանալով վերածուեցաւ Թուրքերուն մէջ k-ի, իսկ հայոց մէջ պահուեցաւ նախնական ձևով։

n=ڭ n=ղ.—ڭ ձայնը (սաղըր քէֆ)՝ որ օսմանեան լեզուին մէջ պարզապէս ատամնական ն ձայնն ունի, մինչև իսկ այժմ բոլոր Փոքր-Ասիական բարբառներուն մէջ կը ներկայացնէ կոկորդական ն և կը հնչուի ń, ńġ, ng, nġ և մինչև իսկ մեր փոխառութեանց նման ġ. այսպէս Թրք. يالڭز yalənəz «միայն» բառը Տրապիզոնի լազերուն, ինչպէս և Թուրքերուն բերնին մէջ yalaġuz հնչումն ունի. Նոյն բառը Ջաղաթայերէն կը հնչուի yalġuz. Գրակ. Թրք. بڭا bana «ինձ, ինծի» կը հնչուի Փոքր-Ասիոյ մէջ bańġa, Ջաղաթայերէն menga ևլն.։ Տարակոյս չկայ որ մեր փոխառութիւններն ալ այս նախնական հնչման համեմատ են։

b=ب b=փ.—Այս փոփոխութիւնը կը գտնենք بتون bütün=փիւթիւն «ամբողջ» և بسبتون büsbütün=փիւսփիւթիւն «բոլորովին» բառերուն մէջ՝ որ հայկական հնչման մէջ b վերածած են փ-ի։ Արևելեան Թուրքերէնն ալ (տես R. B. Shaw, A Sketch of the turki language) ունի پوتون pütün, پسپتون püspütün՝ ճիշտ մեր արտասանութեան համեմատ։

g=ع g=ղ.—Այս ձայնական երևոյթին հետ համեմատութեան առնելով նաև g=غ ġ=ղ ձայնափոխութիւնը՝

որ մեր չորրորդ պարագային կը պատկանի, համեմատութեան առնելով նաև Փոքր-Ասիայի Թրքական բարբառները՝ որոնք երկու տեղն ալ ġ հնչումն ունին, սա եզրակացութեան կը հասնինք թէ այս կարգի բառերուն ալ առաջին և նախնական ձևը ġ հնչումն ունէր, ինչպէս որ գրութեան ճ տառն ալ կը պահանջէ։ Այս հնչումը հետզհետէ փոխուելով՝ Պոլսական ժողովրդական Թուրքերէն լեզուին մէջ վերածուեցաւ g-ի. իսկ գրականին մէջ մաս մը մնաց անփոփոխ (ġ), իսկ ուրիշ մաս մը ժողովրդական լեզուին հետևելով դարձաւ g ձայնին։ Փոքր-Ասիայի տաճիկ բարբառները, ինչպէս նաև այս տաճիկ բարբառներէն փոխ առնող հայերէնը սակայն նոյն ġ ձայնը ամէն պարագայի մէջ ալ առանց փոփոխութիւն մը մտցնելու պահեցին։

ġ=ճġ=խ.—Ասոր վրայ տես k=ق k=խ։

Կը մնայ մեզի քննել մնացեալ ձայնափոխութիւնները. սակայն ասոնք ալ ազդած ըլլալով խիստ սահմանափակ շրջանի մը մէջ (մէկ կամ մի քանի բառ միայն), մանրամասն քննել չենք կրնար. մանաւանդ որ մեզի ծանօթ չեն նոյն բառերուն գաւառական ձևերը Փոքր-Ասիայի գաւառաբարբառներուն մէջ. ապահով կ'երևայ սակայն թէ ասոնք ալ առնուած ըլլալու են Փոքր-Ասիայի այն գաւառին բարբառէն, ուրկէ որ գաղթած են Պոլսահայոց նախնիքը։

Չորրորդ պարագային կը պատկանի միայն g=ճġ=ղ ձայնափոխութիւնը, որուն վրայ տես g=ճg=ղ։

Մինչև այս տեղ խօսուածներէն կը հետևի թէ պոլսահայոց Թրքական բառերը փոխ առնուած են Փոքր-Ասիական բարբառէ մը և այն գաւառէն՝ ուր կը բնակէր պոլսահայոց գաղթականութեան գլխաւոր և առաջնակարգ ճիւղը։ Ասոր համար է որ պոլսահայ բարբառին մէջ կան մի քանի Թուրքերէն բառեր, որոնք անծանօթ են պոլ-

սեցի տաճիկներուն. այսպէս փաթ տիյի «իսկոյն, յանկարծակի», պալա «որդեակ, զաւակս», որոնք առնուած են Փոքր-Ասիական բարբառներէն. Համմտ. արեւել. Թրք. پات pat «իսկոյն», Ջաղաթ. پات pat կամ بات bat «նոյն նշ.»; արեւ. Թրք. بالا bala «որդի, ձագ, զաւակ»։

Եթէ Փոքր-Ասիոյ Թրքական բարբառներն ալ մանրամասն ուսումնասիրուած եւ քննուած լինէին (ինչ որ շատ հեռու ապագայի գործ է), կարելի էր թերեւս որոշել թէ ո՛րն է այն գաւառը՝ ուրկէ եղած է պոլսահայ գաղթականութեան ամենամեծ ճիւղը եւ հաստատուելով Պոլսոյ մէջ, իր մէջ ձուլած է ուրիշ տեղերու նորանոր գաղթականութիւնները։

Ի հարկէ Պոլսոյ Թուրք ժողովրդական լեզուն խիստ մեծ ազդեցութիւն է ունեցած մեր Թրքական բառերուն վրայ. եւ ասոնցմէ անշուշտ մաս մը եւ թերեւս մեծ մաս մը թողելով իր նախնական ձեւը, առած է Պոլսոյ Թրքական ձեւը. բայց ինչպէս տեսանք այս ազդեցութիւնը կատարեալ եղած չէ. այնպէս որ Փոքր-Ասիական բարբառին նշանները կան դեռ ու պիտի մնան պոլսեցոցս վրայ։

Հրաչեայ Յ. Աճառեան

Էջմիածին, 6 Հոկտ. 1900



Աշխատութեանս մէջ m (շրջեալ ա) կը ծառայէ նշանակելու բաց ա, երբ էա կամ լեզուաբանական այբուբէնով ä.

Յ տառը ամէն պարագայի մէջ ալ կ՚արժէ եւր. y = գերմ. j։

Վկայութեան առնուած օրինակներուն մէջ հայերէն բառերը տեղական արտասանութեան համեմատ չեն, այլ գրական ուղղագրութեամբ։

# ԹՈՒՐՔԵՐԷՆԷ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐԸ

# ՊՕԼՍԻ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԵԶՈՒԻՆ ՄԷՋ

ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ

Վանի, Ղարաբաղի եւ Նոր-Նախիջեւանի բարբառներուն



# Ա.

Ա՛՝ *տեսակ մը բացագանչութիւն է, որ խօսքի մը ծայրը դրուելով կը նշանակէ «արդէն, զարմանալի՜ բան». օր.* ըսի՛նք ա՛, տարի՛նք ա՛, զարկի՛նք ա՛ (*շեշտեալ և երկար* ա՛)։ *Նոյնը Վանեցոց մէջ* է՛ *և Նոր-Նախիջևանի մէջ* ու՛ *ձևով պահուած է.* marque d'affirmation dans certaines phrases qui servent de réponse à une autre. =*Թրք.* آ â՝ *միևնոյն նշանակութեամբ և նոյն դիրքով. այսպէս վերի ձևերուն համապատասխան Թուրքերէն ձևերն են.* dedík â, götürdü'k â, vurdúk â.

**Ազա** Վ. *«ժողովքի անդամ։* membre (d'une société etc.)». *օր.* մէճլիսին ազաները փիւթիւն հօս են, *«ժողովքին անդամները բոլոր այստեղ են».=արաբ.* اعضا aza *«անդամ (մարմինի, ժողովքի)»։ Արաբերէն ձևը իսկապէս* عضو azv *բառին յոգնակին է, բայց Թուրքերէնի մէջ եզակիի տեղ կը գործածուի։*

*__Ազառլամիշ ընել__ Վ. *«չախել, յանդիմանել, սաստել.* reprocher, gronder».=*Թրք.* آزارلمق azarlamak *«յանդիմանել»։*

*__Ազատլամա__ *«մէկուն ազատածը.* sauvé par quelqu'un». *օր.* ես քու ազատլամադ եմ։ *Ղարաբաղի բարբառով* ազադլա՛մա *«ազատագրեալ.* esclave affranchi. 2. *արտօնագիր.* ordonnance, permis». =*Թրք.* آزادلمه azadlama *«արձակեալ գերի»։*

†**Ազիզ** *«սուրբ, մաքուր.* saint, propre». *միայն կը*

գործածուի հետեւեալ ասացուածքին մէջ. ջուրին պէս ազիզ ըլլաս. այս խօսքը կ'ուղղուի իբր օրհնէնք ջուր բերող կամ ջուր մատուցանող անձին։ Ազատ գործածութիւն են ստացած ազիզ Վ. «սուրբ, տօն (օր). jour de fête, jour férié», ազիզ Ն. «քնքուշ, փափուկ, նազելի. tendre, délicat», ը'զիզ Ղ. «թանկագին (բարեկամ). cher (ami)».=արաբ. عزيز aziz «փառաւոր, սուրբ, մեծուր» եւն.։

*Ազլ ընել «պաշտօնանկ ընել. destituer», ազլ ըլլալ «պաշտօնանկ լինել. être destitué». կ'ըսուի նաեւ ազիլ ընել, ըլլալ։ Այսպէս եւ ըզլ Վ.=արաբ. عزل azl «պաշտօնանկութիւն. destitution».

*Ազղըն Ն., Ա'զղուն Ղ., աջղուն Վ. «կատաղի, կատաղած (մարդ, շուն, ձի եւն.). féroce, enragé (homme, chien, cheval etc.)». ազղընութիւն «կատաղութիւն. fureur, férocité, rage».=թրք. آزغين azġən «մոլորեալ, կատաղի. séduit, enragé».

Ազման «չափազանց մեծ. énorme». օր. ստավրիտի ազման «ստավրիտ ձկան ամենամեծ տեսակը».=թրք. آزمان azman».

*Ազմիշ ըլլալ Վ. Ղ. «կատղիլ. s'irriter, être furieux, être enragé», Ն. «ճապկտիլ, ձգձգուիլ. bâiller, avoir du ressort». Ն.–Նախիջեւանցիները այս մտքով կը գործածեն նաեւ հայերէն աճիլ ձեւը. հմմտ. Պոլսոյ բարբառով ազմիշ ըլլալ «բազմանալ, շատ աճիլ (ծառերու համար միայն). croître démesurément (se dit des arbres)» երկրորդական նշանակութիւնը.=թրք. آزمق azmak.

*Ազտըրմիշ ընել Վ. Ղ. «կատղեցնել. séduire, enrager, rendre féroce».=թրք. آزدرمق azdərmak.

*Աթէշլէնմիշ ըլլալ «կրակ կտրիլ, զայրանալ, սաստիկ բարկանալ. être furieux, se mettre en colère».=թրք. آتشلنمك atešleṅmek.

*Աթէշ-պէօճէյի «կայծոռիկ, փոսուռայ. ver luisant».=թրք. آتش بوجكى ateš böǰeyi.

Աթիf Վ. «խիզախ, համարձակ. hardi, audacieux».= Թրք. آتاق atak. արաբ. atik.

Աթլազ Պ., աթլաս Ն. Վ. Ղ. «անդրուս, տեսակ մը ընտիր կերպաս. satin».=արաբ. اطلس atlas. Անկէ է նաև ռուս. атласъ նոյն նշ.։

*Աթլազճի «անդրուս ծախող. marchand de satin».= Թրք. اطلسجی atlasǰə.

Աթլամա Վ. «ցատկելու խաղ. 2. ցատկոտուք. կարի մեքենային լաթի վրայ առանց կարելու՝ լոկ թել ձգելով անցած կարերը». օր. աս մաքինան cաs աթլամա կ'ընէ կոr.=Թրք. آتلامه atlama «ոստում. 2. նոյն նշ.»։

*Աթմաճա «բազէ. faucon».=Թրք. آتمجه atmaǰa.

Աժsէr Պ., աժդահur Վ., աժsէհur Ն., աժդա՛հա Ղ. «վիշապ. dragon».=պրս. آژدر ažder.

Ալ Վ. Ն. Ղ. «վարդագոյն կարմիր. écarlate, rose».= Թրք. آل al.

Ալաճա կամ ալաճա-պուլաճա Պ., ալաճա Ն., ալաջա Վ., ոլոջո, իլջո Ղ. «խայտաբղէտ, գոյնզգոյն. bigarré, de diverses couleurs».=Թրք. آلاجه alaǰa, آلاجه بولاجه alaǰa-bulaǰa.

*Ալաճախ կը գործածուի միայն ալաճախդ ըլլայ «առնելիքդ ըլլայ թող. ես քեզմէ վրէժս կը հանեմ ուրիշ անգամ» ասացուածին մէջ։—Սովորական գործածութիւն ունին ալաճախ Ն., ալաջախ Ղ., ալաջաղ Վ. «առնելիք, պահանջք. créance» նշանակութեամբ. = Թրք. آلاجق alaǰak.

Ալայ Վ. Ն. «բազմութիւն, խումբ, բանակ. foule, multitude, troupe, armée».=Թրք. آلای alay.

Ալայ-մալայ Ն. «ամբողջովին, խառնիճաղանճ բազմութեամբ. confusément, en désordre, en foule».=Թրք. آلای ملای alay-malay.

*Ալավէrա «տակնուվրայ, խառնաշփոթ, խառնափնդոր. mêlé, embrouillé, confus, pêle-mêle. 2. խառնաշփոթութիւն, տակնուվրայութիւն. confusion, désordre».=Թրք.

آلاويره alavira, որ իտալականէն փոխ առնուած ըլլալու է։

Ալաֆըռանկա Վ. «եւրոպական. à l'européenne».=Թրք. آلافرانغه alafranga=իտալ. alla franca «ըստ ֆրանսականին»։

*Ալէմ կամ ալէմ-աշխարհ Ն., ալամ-աշխարհ Վ., ոլոմ-աշխարհ Ղ. «ամբողջ աշխարհ, ամէն մարդ, աշխարհք-Արարատ. tout le monde». օր. ալէմ-աշխարհ վըրադ պիտի խնդայ. ալէմին առջեւ ըռէզիլ եղանք.=արաբ. عالم alem «տիեզերք, աշխարհ»։

*Ալէ՛սէվի կամ ալէ՛սէվիէ «ընդհանրապէս, մեծ մասամբ, սովորաբար. en général, généralement, ordinairement».=արաբ. على السويه al-es-seviyye.

Ալէ՛ստա «պատրաստ. prêt, tout prêt» (իբր ածական. այս մտքով աւելի գործածական է հազըր). օր. ալէ՛ստա կայնէր է. 2. «ահաւասիկ, պատրաստ եմ. voilà! je suis prêt (իբր միջարկութիւն՝ ծառայող մարդոց)»։ Վերջին իմաստով է ալաստա Վ..=Թրք. آلستا alésta=իտալ. allestare «պատրաստել» բայէն։

Ալէֆ Ն., ալաֆ Վ., ալավ Ղ. «բոց. flamme».=պրս. علو alev «բոց»։ Ասկէ նաեւ ալէֆլէնմիշ ըլլալ «բոցավառիլ. s'entlammer», ալէֆլէնտիրմիշ ընել «բոցավառել. enflammer, embraser».=Թրք. aleflenmek, aleflendirmek.

*Ալը՛խօմիշ կամ ալը՛խօյմիշ ընել «պահել, վար դընել. détenir, retenir, garder (մանաւանդ մարդ մը, հիւր մը)».=Թրք. آليقويمق alə' koymak.

*Ալըմլը «ընդունակ, խելացի, շուտ հասկցող. intelligent, sensé, sage».=Թրք. آلملى aləmlə.

*Ալընմիշ ըլլալ «առնուիլ, զգածուիլ, ամօթ զգալ. être choqué, affecté, atteint, ému».=Թրք. آلنمق alənmak.

*Ալըշըխ Ն. «վարժ, սովոր. accoutumé, habitué», ալըշըղ Վ. «խառնակ, շփոթ. embrouillé; compliqué».=Թրք. آلشيق aləšək «վարժ, սովոր. accoutumé, habitué».

*Ալըշմիշ ըլլալ Ն. Կ. «վարժուիլ, սովորիլ, ընդելանալ. s'accoutumer, s'habituer. 2. Նոր վառած ածուխին հրահրիլը. commencer à prendre feu», ալըշմիշ ըճիլ Գ. «չարչարուիլ, նեղուիլ. être gêné, avoir de la peine».=Թրք. آلشمق aləšmak «վարժուիլ. s'accoutumer, s'habituer».

*Ալըշվէրիշ Գ. Կ. «առուտուր, առուծախ. commerce, négoce», Ն. «այլայլում, շփոթութիւն. confusion, trouble, embarras». =Թրք. آلش ويرش aləš-viriš.

*Ալըշտըրմիշ ըճել Կ. «վարժեցնել, սովորցնել. accoutumer, habituer. 2. Նոր վառած ածուխը հրահրել. embraser le feu», Գ. «նեղել, չարչարել. tourmenter, maltraiter, faire souffrir».=Թրք. آلشدرمق aləšdərmak.

*Ա՛լթըխ կամ ա՛րթըխ Պ., ա՛րթըղ Կ. «մի, այլ ևս. plus, davantage, dorénavant, désormais», ա՛րթըխ կամ ա՛շտըխ Ն. «արդէն. déjà».=Թրք. آرتق ártək «այլ ևս»։ Առաջին ձևին մէջ ր փոխուած է լ-ի, հայերէն համանիշ ա՛լ բառին ազդեցութեամբ. օր. ա՛լ կամ ա՛լթըխ էրկա՛ն ըրիր, այսինքն «շուտ վերջացուր»։

*Ա՛լթի՛ւստ Կ. «տակնուվրայ, խառնափնդոր. embrouillé, confus, renversé».=Թրք. آلت اوست alt-üst.

†Ալիլ Պ., ալիլ Կ. «կոյր. aveugle».=Արաբ. عليل alil «ախտաւոր, հիւանդ. maladif, malade». Արաբերէն նշանակութիւնը տարբեր է, բայց Թրքական գործածութեամբ բառս քաղաքավար ձեւն է كور kör «կոյր» բառին։ Այսպէս և հին պոլսահայերէնի մէջ։

†Ալլախ-պուլլախ «զարշելի, սիրտխառնուկ, խառնափնդոր. dégoûtant, détestable, sale».=Թրք. آلاق بولاق al-lak-bullak.

Ա՛լլահալէմ «կարծեմ թէ. je crois que».=Արաբ. آلله عالم Allah alim «Աստուած գիտէ. Dieu sait».

Ալլը-փուլլու «զարդարուն, պճնեալ. orné, paré, enjolivé».=Թրք. آللى پوللو allə-pullu. Բուն նշանակութիւնն է «վարդագոյն-կարմիր և փուլ կոչուած զարդերով պճնուած»։

Ալչի «գաճ. plâtre, gypse», ալչիլէմիշ ընել «գաճ քսել, գաճով կացնել, ծեփել. plâtrer».=Թրք. آلچی alčə, آلچیلمق alčəlamak.

*Ալտըրմիշ չընել Վ. «ականջ չկախել, միտք չընել, չլսելու զարնել, կարեւորութիւն չտալ. faire semblant de ne pas entendre ou de ne pas comprendre». այս ձեւը գործածական է միայն բացասականով.=Թրք. آلدرمق aldərmak «կարեւորութիւն տալ եւ լսել»։

*Ախար «տուն-տեղ, հողեր, կալուածներ. bien-fonds, immeubles, terrains».=Արաբ. عقار akar «կալուածք»։

Ախարէթ «կալուածքներ. bien-fonds». =Արաբ. عقارات akarat. Նախորդ բառին յոգնակին է։

†Ախար-ճուր «մշտահոս աղբիւր. fontaine qui coule toujours».=կազմուած է Թրք. آقار akar «հոսող, հոսուն, մշտահոս» եւ հայ. ջուր բառերու բարդութեամբ։

Ախընթը Պ., ախընթի Վ., ախընտի Ն. «յորձանք, հոսանք (ջուրի, գետի, ծովի). courant d'un fleuve ou de la mer».=Թրք. آقندی akəndə կամ آقنتی akəntə.

*Ա՛խըրպէթ «վերջապէս, ամէնէն վերջը. enfin, en dernier lieu, finalement». օր. ա՛խըրպէթ, դուն կէնէ քուկին ուզածդ ըրիր։ Ղարաբաղի բարբառին մէջ ոճով կ'ըսուի ա՛ղպաթ խէր՝ այսինքն «վերջդ բարի՞ ըլլայ».=Արաբ. عاقبت akəbet.

Ախըռ «ախոռ. étable, écurie», կովի ախըռ «գոմ. bouverie», խօյինի ախըռ «փարախ. bercail, bergerie».=պրս. آخور axor «ախոռ»։

Ախըր Պոլսոյ մէջ գործածական չէ. ունին Վ. Ղ. Եւն. «վերջապէս. enfin» միտքով.=Արաբ. آخر axər «վերջ, ետք»։

*Ախլատ կամ ախլատ արմուտի Պ., ահլատ Ն. «տեսակ մը տանձ. espèce de poire». Վանեցիք ունին Ախլաթու խնձոր՝ Ախլաթ կամ Խլաթ քաղաքին անունով.=Թրք. آخلاط axlat կամ آخلاط ارمودی axlat armudu.

†Ախճէ «ստակ. փարային երրորդ եւ ղրուշին 1/120 մասը. aspre, tiers du para et dont 120 font une piastre».=

*Թրք.* آقچه akče, *որ կուգայ* آق ak *«սպիտակ» բառէն. այսպէս և հայերէն* ստակ *հնագոյն* սպիտակ *ձևէն է։*

*Ախմախ գ.. դ. *«տխմար, ապուշ, բթամիտ.* sot, stupide, idiot».=*արաբ.* احمق ahmak.

*Ախշամլամիշ ընել *«մինչև երեկոյ նստիլ, ժամանակ անցընել.* passer le soir, rester jusqu'au soir».=*Թրք.* آخشاملامق axšamlamak *կամ* آقشاملامق akšamlamak.

*Ախշամլայըն կ. *«երեկոյին, երեկոյ ժամանակ.* le soir, vers le soir».=*Թրք.* آخشاملين axšamlayən *կամ* آقشاملين akšamlayən.

*Ախշամճիութիւն *«երեկոները օղի խմելու սովորութիւն.* habitude de boire les soirs de l'eau-de-vie».=*Թրք.* آقشامجيلق akšamǰələk.

*Ախշիլ *կամ* աշխիլ գ., աշխել ն. *«թթուիլ, հոտիլ, աւրուիլ (կերակուրներու).* se gâter (en parlant des mets)».=*Թրք.* اكشيمك ekšimek *«թթուիլ»։*

*Ախպապա *«անգղ թռչունը.* vautour».=*Թրք.* آقبابا akbaba.

Ախսի *«բնութեամբ հակառակ, դեգ.* rebours, acariâtre, revêche».=*արաբ.* عكسى aksi. *Ասկէ* ախսիութիւն *«դեգ բնութիւն.* dureté, cruauté, aigreur», ախսիլէնմիշ ըլլալ *«դեգ բնութիւն գործ դնել.* s'aigrir, se fâcher, être revêche».

Ախսինէ գ., ախսընա գ. կ. *«ի հեճուկս, հակառակը.* à rebours, en dépit de». *օր.* ինծի ախսինէ բաներ մի՛ ըներ.=*Թրք.* عكسينه aksine.

*Ախտուարքա *«առուտուր.* commerce».=*արաբ.* اخذ و اعطا axz u ita.

†Ախտէնիզ *«Ճերմակ ծով, Միջերկրական ծով.* La Méditerranée».=*Թրք.* آق دكز ak-deniz. *այսպէս կոչուած է հակադրութեամբ* Kara-deniz *«Սև ծով»-ին։*

Ախտէր գ., ախթար կ., ըթթար դ. *«փերեզակ.* marchand de différants petits objets», ըխտար դ. *«շրջուն մանրավաճառ.* colporteur».=*արաբ.* عطار attar *«համեմներ, անու-*

*շահոտ բաներ ծախող». արաբերէն բառը ժողովրդական Թուրքերէնի մէջ առած է* aktar *ձեւը եւ «փերեզակ» նշանակութիւնը։*

*Ախրան *«ընկեր.* camarade, compagnon. 2. *տարեկից, հասակակից.* ayant le même âge».=*արաբ.* اقران akran, *որ թէեւ արաբերէնի մէջ յոգնակի է, սակայն Թուրքերէնի մէջ եզակի գործածութիւն ունի «ընկեր» նշանակութեամբ։*

**Ախրէպ** *«կարիճ.* scorpion».=*արաբ.* عقرب akreb.

**Ախրէպ** *«ժամացոյցի սլաք.* aiguille d'une horloge». = *արաբ.* عقرب akreb.

**Ահէնկ** *«ներդաշնակութիւն, երաժշտական գործիքի ձայնյարդարում.* harmonie, accord».=*պրս.* آهنك aheng.

**Աղ** Պ., ավ Ն. *«ձուկ բռնելու ուռկան.* filet de pêcheurs». =*Թրք.* آغ aġ. Ն.–*Նախիջեւանցոց* ավ *ձեւը ծագած է Թրք.* av *«որս» բառին հետ շփոթուելով։*

**Աղա** Պ. *«պարոն. արհեստաւոր եւ միջակ դասակարգի մարդոց միայն տրուած ածական.* monsieur, ne s'applique qu'aux artisans et aux gens de la classe moyenne», Ն. *«մեծ եղբայր, հասուն հասակի մարդ.* frère aîné, homme âgé», Ղ. Վ. *«պարոն, բարձր դասակարգի մարդոց տրուած պատուանուն.* seigneur, titre donné aux gens de la haute classe». *Ասկէ* աղայութիւն *«մեծութիւն, ազնուականութիւն.* noblesse», աղավարի *«մարդու պէս, քաղաքավար կերպով, վայելուչ ձեւով.* poliment, d'une manière polie. 2. *մեծի պէս, ազնուականի երեւոյթով.* noblement, à la manière de nobles».=*Թրք.* آغا aġa.

**Աղաճ-խավունի** *«կիտրոն.* cédrat (fruit)». = *Թրք.* آغاج قاونی aġaǰ kavunə *«կիտրոն», որ բուն կը նշանակէ «ծառի սեխ»։*

†**Աղըլ** *«ոչխարի փարախ.* bergerie». (*այժմ աւելի գործածական է* ախըռ).=*Թրք.* آغل aġəl.

*Աճա՛լաճայիպ *«այլանդակ, բոլորովին տարօրինակ.* étrange, extraordinaire, monstrueux».=*արաբ.* عجلعجائب aǰel-aǰaib.

**Աճայիպ** Պ., աջայիբ Վ. *«զարմանալի, զարմանալի՜*

քան. étrange, curieux, chose curieuse!». = արաբ. عجائب aǰaib.

Աճապ Կ., աճափ Ն., տջտփ Ղ. «արդեօք. est-ce, est-ce que».=արաբ. عجب aǰeb.

Ա՛ճապա Պ., տջաբա Կ. «արդեօք. est-ce, est-ce que».=արաբ. عجبا aǰeba.

Աճէլէ Կ. Ն., ճէ՛լլի Ղ. «աճապարանք. hâte. 2. շտապելու, ստիպողական. pressant, urgent. 3. շուտ, շուտով. à la hâte». օր. աճէլէ մ'ը՛ճեր. աճէլէ գործ ունիմ. = արաբ. عجله aǰele «շտապ», թրք. عجله‌لی aǰeleli «շուտով, շտապով»։

*Աճէլէճի «անհամբեր, շտապող. impatient, qui se presse, se hâte».=թրք. عجله‌جی aǰeleǰi.

Աճէմ Պ., տջտմ Կ. «պարսիկ. persan».=արաբ. عجم aǰem.

Աճէմի Ն., տջտմի Կ. «անվարժ, անսովոր. inexpérimenté», աճէմիութին «խակութիւն, անվարժութիւն. inexpérience, impéritie».=պրս. عجمی aǰemi.

Աճէմիստան Պ., տջտմստան Կ. «Պարսկաստան. Perse». =պրս. عجمستان aǰemistan.

*Աճըմթըրախ «քիչ մը լեղի. un peu amer». = թրք. آجمتراق aǰəmtərak.

*Աճի Պ. «լեղի, դառն. amer». Ղարաբաղի բարբառը կը գործածէ տջի «ցաւ, բանի մը չար հետեւանքը. chagrin, la mauvaise conséquence d'une chose» նշանակութեամբ. =թրք. آجی aǰə «դառն. 2. ցաւ»։

Աճի Պ., աջի, աջըղ Կ. «վրէժ, քէն, ոխ. vengeance, rancune, haine».=թրք. آجی aǰə. հմմտ. աճին հանել «վրէժը լուծել. venger, se venger de».

Աճի աղաճ «quassia կոչուած ծառին կեղեւը՝ որ իբր դեղ կը գործածուի. écorce de quassia». = թրք. آجی آغاج aǰə aġaǰ.

*Ա՛ճկէօզլիւ «ծակաչք, անյագ, անկուշտ, ագահ. avide, avare».=թրք. آج گوزلی aǰ gözlü որ բուն կը նշանակէ «անօթի աչքով»։

Ամմա կամ ամմա Վ. Ն. Դ. «սակայն, բայց. mais, cependant. 2. չափազանցութիւն ցուցնող բառ. terme pour exprimer un excès». օր. ա՛մմա խօսեցար հա՜՝ «խիստ շատ խօսեցար».=արաբ. اما emma.

Ամա՛ն Վ. Ն. Դ. «բացագանչութիւն՝ ցաւ, կսկիծ արտայայտող, օգնութիւն խնդրող, ձանձրոյթ, զզուանք, յուսահատութիւն ցուցնող. interjection exprimant une douleur, une demande de secours, l'ennuie, le mépris ou le désespoir». =թրք. آمان aman.

*Ամէլ «բնական կարիք, փորը երթալ. aller à la selle, faire ses besoins, besoin naturel». օր. ամէլ ունի՛ս, ամէլդ ի՛նչպէս է «բնական պէտքդ սովորական վիճակի՞ն է, ինչպէ՞ս է». = արաբ. عمل amel, որ կը նշանակէ «գործ», բայց ունի նաեւ վերի նշանակութիւնը, ինչպէս որ պօլսահայերէն գործ՝ բացի իր սովորական նշանակութենէն, կը նշանակէ նաեւ «բնական կարիք». այսպէս և մեծ գործ «կղկղանք», պզտիկ գործ «մէզ»:

†Ամին կը գործածուի միայն հետեւեալ ոճին մէջ. Ես այդ ըսածիդ ամին չեմ ըսեր «համաձայնութիւն չեմ տար, չեմ ընդունիր, այո չեմ ըսեր. je ne consente pas».=արաբ. آمين amin «ամէն, եղիցի», որ է աղօթքներու վերջին ըսուած ամէն-ը:

Ամուճա Պ., էմմէ Ն., ը՛մի, ա՛մի (սեռ. ա՛մու) Դ. «հօրեղբայր. oncle paternel». Պօլսոյ մէջ կը գործածուի նաեւ մուրացկանները կանչելու համար.=արաբ. عم amm «հօրեղբայր» բառէն յարմարցուած թրք. عموجه amuǰa համանիշ ձեւէն:

*Ամպէր «յամբար ծաղիկը. ambre».=արաբ. عنبر anber.

*Ամպէրիյէ «տեսակ մը ըմպելի խմիչք, քաղցրօղի. rossolis».=արաբ. عنبريه anberiyye.

Այազ Ն. Դ. «պարզկայ. serein du soir, nuit sereine». =թրք. آياز ayaz.

Այազմա «կաթնաղբիւր, սուրբ աղբիւր. fontaine d'une eau réputée avoir des propriétés merveilleuses». Նիւթին

հետ բառն ալ յունականէն ծագած է.=Թրք. آيازمه ayazma =յուն. ἁγίασμα.

Այախ «անիւին Թեւերը. rais d'une roue». գործածական է միայն Նոր-Նախիջեւանի բարբառով. = Թրք. آياق ayak «ոտք. pied».

*Այախ-թախըմի «ստորին դասակարգ, ռամիկ ամբոխ. le vulgaire, bas peuple».=Թրք. آياق طاقمى ayak takəmə.

Այար Պ., այյար Վ. «ժամացոյցի ճշտութիւն. précision d'une montre. 2. ոսկիի, արծաթի յարգը, խառնուրդի աստիճանը. titre, aloi. 3. յարմար չափ. degré juste, convenable».=Արաբ. عيار ayar.

*Այարթմիշ ընել Ն. «գլխէ հանել, անբարոյականացնել. débaucher, séduire, démoraliser».=Թրք. آيارتمق ayartmak.

Այըլմիշ ըլլալ Պ., այմիշ ըլալ Ն. «սթափիլ. se désenivrer, se dégriser».=آيلمق ayəlmak.

Այըխ Պ., այըղ Վ., այնըխ Ն. «սթափ, գինովութիւնը անցած. désenivré, dégrisé», այըխութիւն «սթափ վիճակ. désenivrement, dégrisement», այըխնալ «գինեթափիլ. se désenivrer, se dégriser».=Թրք. آيق ayək «սթափ»:

*Այըպլամիշ ընել Պ., այըբ անել Վ. «ամչցնել, երեսին տալ, այպանել, պարսաւել. blâmer, accuser, incriminer, faire honte».=Թրք. عيبلامق ayəblamak.

Այըրթ «տարբերութիւն. différence». այսպիսի ասացուածներու մէջ. այըրթ չունի «տարբերութիւն չունի. il n'y a pas de différence». այըրթ չեմ կրնար ընել «չեմ կարող որոշել (աչքս կարճատես է). je ne peux pas distinguer, je suis myope, j'ai la vue courte».=Թրք. آيرت ايتمك ayərt itmek «զանազանել, որոշել»: Հմմ. ա՛յըրս «բաժանուիլ»:

*Այըրմիշ ընել «զատել, բաժնել. séparer, partager».=Թրք. آيرمق ayərmak.

Այի Պ., այու Ն. «արջ. ours». այիճի «արջ խաղցնող. meneur d'ours».=Թրք. آيو ayu կամ آيى ayə «արջ», آيوجى ayuǰə կամ آييجى ayəǰə «արջ խաղցնող»:

*Ային-օյին Վ. Ն. Պ. «տղայական, խաղալիքի նման,

ոչ լուրջ. enfantine, pas sérieux, puéril». =Թրք. آيين اويون ayən oyun.

Այի չիչէյի «արեւածաղիկ. tournesol».=Թրք. آى چيچكى ay čičeyi, որ կը նշանակէ բուն «լուսնածաղիկ». բառիս آى ay «լուսին» մասը շփոթուելով յետոյ ayə «արջ» բառին հետ (հաւանականաբար դիտմամբ)՝ առաջ եկած է վերի ձեւը՝ որ բուն կը նշանակէ «արջի ծաղիկ»։

°Այլախճի «սպասաւոր, ծառայ. serviteur, domestique, valet». այլախճիութիւն «սպասաւորութիւն, ծառայութիւն. service, domesticité».=Թրք. آيلاقجى aylakǰə.

*Այլըխ Պ., այլըղ Ն. «ամսական, ամսական ռոճիկ. paye d'un mois, pension, salaire».=Թրք. آيلق aylək.

†Այխըրի «խոտորնակ, ծուռ, անկանոն. oblique, à travers, irrégulier (աւելի բարոյական մտքով)». այխըրի լախըռտըր «անվայել խօսք. paroles indécentes».=Թրք. آرقورى arkuri «խոտորնակ, կողմնակի. oblique. 2. չափազանց. trop, excessif». Վերջի իմաստով շատ գործածական է կաթոլիկ հայերու մէջ։

Այղըռ Վ. Ն. Ղ. «մեծ, արու, յովատակ ձի. cheval entier, étalon». Պոլսոյ մէջ գործածական է աւելի նմանութիւն ցոյց տալու համար. օր. այղըռի պէս վազել. այղըռ կ'ըլմանիս.=Թրք. آيغر ayġər «մատակախաղ, չկըռտած ձի»։

Այնա Վ. «հայելի. miroir». այնայի պէս «հայելանման, շատ փայլուն, մաքուր. bien clair, brillant, resplendissant». Ըստ այսմ նաեւ Ղարաբաղի բարբառով այնա «մաքուր, ջինջ. propre, brillant».=Պրս. آيينه ayine «հայելի»։

Այնաճի Վ. «հայելի շինող կամ ծախող. marchand ou fabricant de miroirs», Ն. «ստախօս. menteur».=Թրք. آيينه‌جى ayineǰi «հայելի ծախող կամ շինող»։

°Այնի Վ. «ճիշտ ու ճիշտ, նոյն ինքն. exactement, tout à fait le même».=Արաբ. عينى ayni.

Այվա Ն. «սերկեւիլ. coing». այվաճի «սերկեւիլ ծախող. marchand de coings».=Թրք. آيوا ayva, آيواجى ayvaǰə.

Այվա թիւյիւ «աղուամազ. duvet, poil follet». =Թրք. آیوا توکی ayva tüyü, նմանութեամբ սերկեւիլի վրայի բարակ մազերուն։

*Այrըլմիc ըլլալ Վ. «բաժնուիլ. se séparer». =Թրք. آیرلمق ayrəlmak.

*Անալըխ «խորթ մայր, մօրու, մայրացիր. marâtre». անարգական բառ է եւ այս պատճառաւ կը նշանակէ նաեւ «գէշ մայր, անարժան մայր, չար մայր. mère méchante». =Թրք. آنالق analək «մօրու. marâtre».

*Անաճ «մեծ, անհեթեթ, խոշոր. énorme, gros, gigantesque». =Թրք. آناج anaǰ.

†Անա-պապա-կիւնի Վ. «խառնակութիւն, յուզում, շփոթութիւն. confusion, désordre, trouble». =Թրք. آنا بابا کونی ana baba güni, որ բուն կը նշանակէ «հօր մօր օր, ծնողաց օր։»

*Անաsան sօղմա Վ. «մօրէ մերկ, բոլորովին մերկ. tout nu». =Թրք. آنادن طوغمه anadan doğma, որ բուն կը նշանակէ «ի մօրէ ծնեալ։»

Անթիfա Վ. Ն. Դ. «եզական, անգիւտ. singulier, rare, introuvable. 2. հնութիւն. antique, objet d'antiquité». =Թրք. آنتیقه antika =Իտալ. antica.

Անթիfաճի Վ. «հնութիւններ հաւաքող կամ ծախող, հնադէտ. antiquaire». =Թրք. آنتیقه‌جی antikaǰə.

Անիսօն Վ. Ն. «անիսոն. anis». =Թրք. آنیسون anison =Յուն. ἄνισον.

Ա՛նիsէ «անմիջապէս, իսկոյն. immédiatement, dans l'instant même». =Թրք. آنیده anide.

Անկարյա Վ. «առանց վարձքի, լոկ մէկուն սիրտը չըկոտրելու համար յանձն առնուած եւ դժկամակութեամբ կատարուած գործ. travail fait forcément et gratuitement». =Թրք. آنغاریه angarya =Յուն. ἀγγαρία «տարապարհակ աշխատանք. corvée».

Ա՛նճախ Վ. Ն., ա՛նջախ Դ. «հազիւ թէ. à peine. 2. միայն. seulement, ne ... que. 3. բայց, սակայն. mais, ce-

pendant, pourtant».=Թրք. آنجق anǰak. օր. անչափ փնտռեցինք, ա՛նճախ գտանք. Աղուոր աղջիկ է, ա՛նճախ քիչ մը պօյը պզտիկ է. Դուն ա՛նճախ մարդու սիրտ կոտրելու խօսքեր ըրէ։

Աշ Պ. «պատուաստ (ծառի, մարդու). greffe, vaccine», Ն. «կորիզին մէջի նուշը. amande (d'un fruit)».=Թրք. آشی ašə «պատուաստ. greffe, vaccine».

Աշըխ Պ., «վէգ. osselet».=Թրք. آشیق ašək.

†Աշըխ Պ., աշըղ Կ. Դ. «աշուղ, արևելեան բանաստեղծ-երգիչ. poète populaire». աշըխութիւն «աշուղութիւն». =արաբ. عاشق ašək «սիրահար. amoureux» բառէն, որ Թուրքերէնի մէջ առած է այս նշանակութիւնը։

*Աշընմիշ ըլլալ «մաշիլ. s'user». կը գործածուի միայն կարծր նիւթերու համար. օր. երկաթ, քար, մանաւանդ երկաթեայ գործիք մը ևն.. կակուղ նիւթերու համար կը գործածուի միայն մաշիլ. օր. յաթերս մաշեցան. աս խազմային ա՛լթըլխ աշընմիշ եղեր է.=Թրք. آشنمق ašənmak.

*Աշըրմիշ ընել Պ. «անցընել, բանի մը միւս կողմն անցընել. faire dépasser, franchir. 2. գողնալ. voler, dérober, filouter» (երգիծական լեզուով), Դ. «վրայէն ցատկել. sauter par-dessus», Կ. «արշաւասոյր վազել. courir à toutes jambes».=Թրք. آشورمق ašurmak.

Աշլամա Կ. «պատուաստով յառաջ եկած (ծառ, պտուղ). ente, enté», Ն. «պատուաստ. greffe».=Թրք. آشیلامه ašəlama.

Աշլամիշ ընել Պ., աշլայիշ անել Ն. «պատուաստել. enter, greffer, vacciner».=Թրք. آشیلامق ašəlamak.

†Աշխանա Ն. Դ., աշչուխանա, աշչիխանա Կ. «խոհանոց. cuisine». այս հին բառին տեղ Պոլսոյ մէջ գործածական է հիմա մութվախ.=պրս. آشخانه ašxane.

*Աշխիլ տես ախշիլ։

*Աշճի Ն., աշչի Կ., աշփազ Դ. «խոհարար, կերակուր եփող. cuisinier». աշճի պաշի «խոհարարապետ. chef-cuisinier». աշփազխանա «խոհանոց. cuisine».=Թրք.

